ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

# ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ



Վիպակ

Պատմվածքներ

[illegible]
[illegible]
[illegible]
[illegible]
[illegible]
[illegible]
88թ

Երևան
«Սովետական գրող»
1987

ԳՄԴ 84Է7
Ա 832

Արամյան, Վ. Գ.

Ա 832 Խոտորջուրցիներ։ Վիպակ և պատմվածքներ (Վալտեր Արամյան)— Եր.։ Սովետ. գրող, 1987, 272 էջ։

Արևմտյան Հայաստանի Պարխարյան լանջերում ապրող հին մի ժողովուրդ, որ կոչվել են խոտորջուրցիներ, ոչնչացվել են առաջին համաշխարհային պատերազմի տարիներին և դրանից առաջ։ Շատ քիչ բան է մեզ հայտնի այդ ժողովրդի կենցաղի, ավանդույթների մասին, որ պատմվում է հեղինակի կողմից՝ եկող և ապրող սերունդներին։

Պատմվածքներում հեղինակը ներկայացնում է հին Երևանը։ Հեղինակն ընթերցողին առաջնորդում է մերձավոր անցյալի արահետներով, որտեղ հանդիպում են ծանոթ ու սիրելի դեմքեր։

Ա $\frac{4702080200}{750\ (01)\ 87}$ 87 «Տ»

ԳՄԴ 84Է7

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ

Պարխարյան լեռների արևելյան լանջերում, Ճորոխ գետի ձախ ափին էր այդ երկիրը, և իր մեկ ծայրով միայն հասնում էր մինչև Ճորոխի ափը և այնտեղ հատվում: Հատման տեղում լեռնաշղթայի երկարությամբ, մի նեղ անցք էր առաջացել և այդ անցքը կոչվում էր ԴՈՒՌՆ ԽՈՏՈՐՋՈՒՐ: Խոտորջուր կոչվող գյուղախումբը միայն այդ դռնով էր կապված աշխարհի հետ: Ժողովուրդը դարեր շարունակ գտնվում էր անմատույց լեռներում և ապրում էր իր ներքին կյանքով, որը նման չէր մյուս գյուղախմբերի կյանքին: Նրա բնակիչները կոչվում էին խոտորջուրցիներ:

Խոտորջուրը ճանապարհներ չուներ՝ կածա՞ներ էին, մեծ մասամբ դժվար անցանելի և հարմար միայն հետիոտն անցորդների համար: Որոշ տեղերով անցնում էին նաև ձիեր, ջորիներ և էշեր: Կային նաև այնպիսի կածաններ, որ այս կենդանիների համար նույնիսկ դժվարանցանելի էին: Մարդիկ այստեղ ամեն ինչ փոխադրում էին շալակով: Շալակով էին տանում տղամարդիկ և կանայք, նույնիսկ դեռատի աղջիկներն ու ճան խաղացող տղաները: Աստված աշխարհի բեռը դրել էր խոտորջուրցիների շալակը:

Խոտորջուր երկրամասը կտրատված էր բազմաթիվ բարձունքներով և ծործորներով, գահավեժ կածաններով և անձուկ գետահովիտներով: Երկրամասը հարուստ էր ալպյան արոտավայրերով, ժայռաքլուրներն ամբողջովին ծածկված էին անտառներով:

Խոտորջուրի սահմանը սկսվում էր Ճորոխի ափից և վերջանում Պարխարյան լեռնաշղթայի ամենաբարձր գագաթով՝ ՀՍԿԱ ՔԱՋՔԱՐՈՎ, որի բարձրությունից մարդու առջև բաց-

վում էր մի հիասքանչ տեսարան դեպի Պոնտոս, դեպի Վրաստան, Հայաստան: Պարզ եղանակին այնտեղից երևում էին Սև ծովը, Կովկասյան լեռները և Արարատը:

Խոտորջուրը մաքուր հայաբնակ վայր էր: Այնտեղ էին ապրում հայ կաթոլիկները: Եղեռնի տարիներին նրանց մեծ մասը տարագրության մեջ էր: Այն մասը, որ մնացել էր Խոտորջուրում, ոչնչացվեց ամբողջովին.

«—Խոտորջուրը պաշարվեցավ և մինչև այսօր ոչ ոք դուրս չեկավ այնտեղից գեթ մեզ պատմելու պատմությունը» (Զորավար Անդրանիկ):

Թուրքերի ձեռքով ոչնչացվեց Պարխարյան լեռներում ապրող մի հին ժողովուրդ:

Խոտորջուրի գյուղերն էին՝ Ճինապաղ, Կիսակ, Միջնթաղ, Խնդաձոր, Կրոման, Սունինց, Վահնա, Քեղուտ, Կաղմուխուտ: Գյուղերն իրարից հեռու էին երկուսից մինչև չորս կիլոմետր տարածությամբ:

Խոտորջուրի հարևան գյուղերն էին՝ Համշեն, Երևակ, Ծղապոչ, Իշխան, Դորդքիլիսա, Վերժանգետ, Բերդագրակ, Արսիս, Կիսկիմ, Կուտրաշեն, Փըթըքնի, Որջնաղ, Նիխաղ, Քարկամուչ, Ղումելեք, Վերին և Ներքին Մոխրակույտներ, Իրիցաձոր, Կարմիրք, Ճեթկունց, Ոսկևան, Հունուտ, Զրկնջուր, Սալեջուր և Թափձոր:

Հիմա սրանցից ոչ մեկը չկա, ոչ մեկի անունը չի մնացել:

ՀԵՂԻՆԱԿ

# ԽՈՏՈՐ ՋՈՒՐ

*Նվիրում եմ խոտորջուրցիներ՝ Թորգոմ և Երվանդ Գևորգյանների հիշատակին, որոնք ինձ տրամադրեցին իրենց արխիվը։*

*Հեղինակ*

Արևը դեռ դո՛ւրս չէր եկել, երբ գահավեժ կածանի եզրին հայտնվեց նիհար, արևից ու քամիներից այրված դեմքով մի պատանի։ Հազիվ տասնվեց տարեկան պատանին շտապում էր ժամ առաջ հասնել Ծիճապաղ գյուղը։ Հրամայված էր նրան աննկատ անցնել ԿԻՍԱԿ գյուղը, ոչ ոքի չհանդիպել։ Պատանու աչ այտի վրա թրթռում էր մի անհանգիստ մկան։ Թեթև ոտքերը կարծես գետնին չէին կպչում։ Լեռնային քամին դիմացից փչում, խառնում էր նրա շեկ գանգուրները, և պաղությամբ լցնում բաց ծոցը։

— Տե՛ս, չուշանաս,— շուտ տեղ հասնես,— ասել էին նրան,— ոչ մի տեղ չմնաս։

Սուրհանդակը ոչ մի տեղ կանգ չէր առնում։ Նա լավ գիտեր Թուրքերենը, նրանց երկիրն ու կենցաղը, բայց սիրտն անհանգիստ էր։ Ինչ-որ բան շտապեցնում էր նրան, նա զգում էր, որ շտապել պետք չէր, բայց իրեն զսպել չէր կարողանում։ Կանաչ բլուրների միջև մերթ երևում, մերթ կորչում էր Ծիճապաղ գյուղը, թվում էր նրան, թե հասել է արդեն, բայց պարզվում էր, որ դեռ հեռու է, շատ շտապելուց ամեն ինչ խառնում էր իրար։ Երբ, իսկապես, մոտեցավ գյուղին արևն արդեն դուրս էր գալիս իր հանդիսավոր վեհությամբ։

Սուրհանդակը կանգնեց, ինչպես անում էին բոլոր ճանապարհորդները, ողջունեց արևածագը, ճակատը շփեց և, երբ թեքվեց դեպի աջ, խանդակի վրայից ցատկելու համար, սուր բզզոցով մի գնդակ ջարդեց նրա ոտքի տակի քարը։ «Նկատել են»,— անցավ սուրհանդակի մտքով և նույն պահին ստվերի պես լուծվեց, չքացավ։ Արևն իր ճառագայթներն իջեցրեց սիրած աշխարհի վրա։ Սուրհանդակը հասկացավ, որ գնդակն ուղարկեցին Շարիֆ օղլի Հուսեյին բեգի տղաները։

Հուսեյին բեգը հռչակված ավազակապետ էր, բոլորն էլ ճանաչում էին նրան, շատերն էլ անձամբ գիտեին։ Տարիների ընթացքում նա իր շուրջն էր հավաքել բանտերից, գժանոցներից, կախաղաններից փախած ոճրագործ մարդկանց, դասալիք զինվորների, թափառող անօթևան խաղամոլների, գողերի և մասնագետ սպանողների մի ահագին ոհմակ։ Խոստացել էր նրանց ապահով կյանք, ամենօրյա կուշտ փոր, լավ զինվածություն, անառակ կյանք. այն ամենն, ինչ-որ կարող էր խոստանալ իր «քաջ տղաներին» հմուտ ավազակապետը։

Շարիֆ օղլի Հուսեյին բեգը հունուտցի էր, գեղեցիկ, հուժկու մի տղամարդ։ Ատամներով ընկույզ էր ջարդում։ Բռնցքի հարվածով մեխը խրում էր թաց գերանի մեջ։ Ուրախ, զըվարթ, կատակասեր ըմբիշ էր։ Սիրում էին մարդիկ նրա հերոսական ոգին և նվիրվածությունը։ Ծառայել էր թուրքական բանակում, հասել էր ենթասպայի աստիճանին և հետո դասալքել էր բանակը։ Բռնվել, մի քանի անգամ դատապարտվել էր մահվան, փախել էր զինվորական բանտերից։ Տարել էին կախաղան հանելու, փախել էր կախաղանի տակից և, վերջապես, հասել էր այն բանին, որ արդեն հռչակված ավազակապետ էր դարձել և տաճկական օրենքն այլևս չէր հետապնդում նրան։ Այդ երկրի օրենքները հարգանքով և պատկառանքով էին նայում այդպիսի մարդկանց։ Օրենքն, իհարկե, որպես բարոյական սկզբունք, «դեմ էր» ավազակներին, բայց սիրում էր նրանց, որովհետև նրանք ապահովում էին թուրքական պետության ծրագրերի կատարումը անհավատներին հավատի բերելու, կամ իսպառ ոչնչացնելու գործում և ապահովում պետության ջարդերին «մասնակից» լինելը։ «Օրինապահ այդ երկրում» օրենքը միայն իր գրավոր դեմքն ուներ, որից դուրս նա անդեմ էր։ Այն մերկացված սուր էր

և գտնվում էր նրանց ձեռքին, ովքեր գիտեին նրա գործածության եղանակը։ Սուրն իր տերն ուներ, օրենքն՝ իր։ Եվ տերերն ինչպես ցանկանային, այնպես էլ գործածության մեջ կդնեին թե մեկը, թե մյուսը։ Օրենքը մի երեսով «հետապնդում» էր Հուսեյին բեգին, մյուս երեսով պաշտպանում ու հիանում նրանով։

Հին խոտորջուրցիները վկայում են, որ Հուսեյին բեգը պատանի հասակում «լավ թուրք է եղել»։ Տեր-Կարապետ մեծավորի հետ ապրել է նույն գյուղում, նրա մանկության ընկերն է եղել, միասին ճան են խաղացել, չարություններ արել։ Դաշտ են գնացել, ծառերը բարձրացել և շատ են սիրել միմյանց։ Մոտ են եղել նաև նրանց ծնողները։ Բայց ահա ժամանակ է անցել և նրանք հիմա թշնամիներ են դարձել։ Հուսեյին բեգը կատարյալ չարիք է Սպեր, Թորթում, Կիսկիմ գյուղերի գլխին։ Մի՞թե որևէ բան նշանակում է հիմա, որ նա մանկության տարիներին «լավ թուրք է եղել»։ Հիմա նա իր ավազակներով մտնում է այդ գյուղերը սպանում, թալանում, պղծում է ամեն ինչ և ամեն անգամ հաջող ավարից հետո մեծ խնջույքներ սարքում Հունուտի անտառներում։ Նա նույնիսկ Էրզրումի հասարակական տներից դաղաչների միջոցով կանայք էր բերել տալիս և օրերով անձնատուր լինում վայրի խրախճանքներին։ Նրա տան դռները երբեք չէին փակվում պետական նշանավոր և նույնիսկ աննշան գործիչների առաջ։ Հուսեյին բեգը հյուրասեր էր, քաղցր ու բարի։ Նա նույնիսկ թալանում, պատվազրկում էր թուրք կանանց ու աղջիկներին, պղծում էր թուրք ընտանիքը, բայց կարողանում էր «խաթրը անել» փոխարենը «լավություն անել»։ Նա թալանել էր մի պատվարժան թուրքի, այրել էր նրա ամբարները, տարել նրա անասունները, անարգել ու պղծել նրա կնոջը։ Եվ այդ բոլորից հետո թալանված թուրքը եկել, մտել էր Հուսեյին բեգի տունը, խնդրել էր հանուն ալլահի ինչ-որ բան գոնե վերադարձնել իրեն՝ տարած իրերից, ոսկիներից, որպեսզի ինքը վշտից ու սովից չմեռնի թշվառության մեջ։

—Ի՞նչ ես ասում, պատվարժան հավատացյալ մահմեդական, — ասել էր նա իր զոհին, — քանի ես կենդանի եմ, քո գլխից մի մազ անգամ չի ընկնի։ Դու անհոգ ապրիր, մոռացիր այն բոլորն, ինչ-որ տեղի է ունեցել։ Ներիր ինձ, մարդ

միշտ էլ սխալական է։ Մոռացիր, Հաջի Ջաֆար, ի սեր ալլահին մոռացիր։ Մարդս պետք է մոռանա։ Մոռացությունը աստվածային շնորհ է, որ տրվել է մարդուն՝ նրա հոգու փրկության համար։

Նա ընդունում է Հաջի Ջաֆարին եղբոր պես, թանկագին հյուրի նման։ Ոչխար է մորթել տալիս, սեղան է բացում, նրա հետ նստած գինի է խմում և անառակություն անում ողջ գիշեր։

— Աշխարհս, Ջաֆար, ժամանակավոր մի բան է մարդու համար, երեկ եկանք, այսօր գնալու ենք։ Ոչինչ այստեղ մերը չէ։ Այն անասունները, որ տարան ողաներս, նրանց էլ չի մնա։ Այստեղ ամեն ինչ ալահինն է։ Նա է տվել, նա էլ տանում է։ Ալլահի կամքն է, Ջաֆար։ Դու արդար, հավատացյալ մարդ ես։ Ես էլ եմ հավատացյալ, բայց իմ մեջ շեյթան կա նստած, ամեն ինչ նրա ձեռքով է արվում։ Հոգիս արդար է, Ջաֆար, ես բարի մարդ եմ, ձեռքս է մեղավոր, մեջս նստած շեյթանն է մեղավոր։

— Իհարկե, բարի մարդ ես, — շշնջում է Ջաֆարը, — դու ինձ գոնե մի բան վերադարձրու իմ ունեցվածքից, Հուսեյին բեգ։ Չէ՞ որ ես էլ հեշտությամբ ձեռք չեմ բերել այդ բոլորը։

Հուսեյին բեգը հարցնում է իր օգնականներին, թե ի՞նչ է մնացել Ջաֆարի ունեցվածքից։ Օգնականները ցավով նշում են, որ ոչինչ չի մնացել։

— Տարեք Ջաֆարին պահեստ, ինչ որ կուզի տվեք թող տանի։

Ջաֆարին տանում են պահեստ, բայց այնտեղ ոչինչ չի լինում։

—Իմ տան դռները բաց են քո առաջ,— ասում է նա Ջաֆարին,— մի կտոր հաց քեզ համար միշտ էլ կճարվի ինձ մոտ։

Եվ նրանք բաժանվեցին իրարից։ Ջաֆարի գլուխը պտույտ էր գալիս անսովոր խմիչքներից և բարքից, որ նրա կարծիքով միայն անհավատներին էր վայել, և նա չէր հասկանում, թե ուր էին տանում իրեն։ Իհարկե, Ջաֆարն այլևս երբեք չդիմեց Հուսեյին բեգին, որովհետև նրա ողաները հոգ էին տարել, որ Ջաֆարը «այլևս ոչ մի բանի կարիք չունենա»։ Նրան թաղեցին առանց կրոնական ծեսերի, որովհետև նրան գտան

ծառից կախված, իսկ կախվածներին ջեննաթ չեն ընդունում։

Հուսեյին բեգի ասպատակություններից զերծ էին մնում միայն իր հայրենի հումուտցիները և Հումուտ գյուղը, որտեղ նա հանգստանում էր ծանր ու թեթև արշավանքներից հետո։ Երբ ցրտերն ընկնում էին, Հուսեյին բեգը իր տղաներով քաշվում էր Հումուտ՝ ձմեռելու։ Հասկանալի է, թալանի մի զգալի մասը նա տալիս էր հումուտցիներին։ Հումուտցիները թալանած ապրանքները տանում էին վաճառելու ուրիշ քաղաքներում, փոխանակում էին ուրիշ ապրանքների հետ, մի խոսքով, նա պահում էր իր Հումուտը և հումուտցիներին այնպես, որ մարդիկ վախենում էին նրանց վրա ձեռք բարձրացնել, կամ դիպչել նրանց ունեցվածքին, ով փորձեր՝ դաժանորեն կպատժվեր։ Նրա պաշտպանության շնորհիվ արտոնյալ գյուղ էր Հումուտը։ Հումուտցին էլ նրա նման մի «հարգարժան» ավազակ, որին պարտավոր էին հարգել, որից պարտավոր էին քաշվել և վախենալ։

Շարիֆ օղլի Հուսեյին բեգը մի ուրույն «պետություն էր» մուսուլմանական պետության մեջ։ Նրա շատ կարևոր մի մասն էր, պետականության ձևերից մեկը։ Երևի աշխարհիս երեսին ուրիշ մի այդպիսի պետություն չկար, որտեղ ավազակ լինելը այնքան պատվավոր և հարգված զբաղմունք լիներ, քաջության, խիզախության և հայրենասիրության առումով՝ ինչպես Թուրքիայում։ Այստեղ տղամարդ էր նա, ով կարողանում էր սպանել, գողանալ, թալանել, կաշառել, փախչել, պղծել և այդ բոլորից հետո էլ կարողանում էր մաքրվել մուսուլմանական ծեսերի և պետական օրենքների հովանավորությամբ։ Էլ ի՞նչ տղամարդ, եթե չես գողացել, հափշտակել, ճանապարհ չես կտրել, անասունների նախիրներ չես քշել։ Եվ այս բոլորն արել էր Շարիֆ օղլի Հուսեյին բեգն իր ժամանակին։

Նրա տղաների գնդակն էր, որ ջարդեց սուրհանդակի ոտքի տակի քարը։

Սուրհանդակը նստեց հովանոցի պես թեքված մի ժայռի տակ, որպեսզի կարողանա լսել և դիտել իր շրջապատը։ Նա անդեն էր, նրա երկնագույն աչքերը խուզարկում էին թփերն ու կածանները, որտեղ ամենաթույլ շշուկներն ու շարժումներն անգամ։

— Լավ իմացիր, Բագաս, որդիս, որ քեզանից է կախված մեր լինել կամ չլինելու հարցը,— ասել էր նրան Խոտորջուրի Մեծավորը։ —Դու քո հոր որդին ես, այս լեռների զավակը։ Բոլոր կածանները լավ գիտես, եթե քեզ օգնել է պետք, ասա, օգնենք։

— Գիտեմ, Մեծավոր, բոլոր կածանները գիտեմ,— ասաց նա և խոնարհաբար գլուխը կախեց։ Խելառ Բագաս էին անվանում այս պատանուն, արագոտն Բագաս, այծեմորթ Բագաս, դիվահար Բագաս, ամեն մարդ իր ուզած մականունն էր ավելացնում նրա անվան վրա, պահպանելով մշտապես Բագաս անունը։ Խելառ Բագասին ձեռք չէր տալիս նույնիսկ ինքը՝ բեգը, նա ասել էր իր տղաներին, որ «Ջդիպչեն ալլահի պատժած ցավագարին»։ Շարիֆ օղլի Հուսեյին բեգը «խսկական» տղամարդ էր։

Մի օր, երբ Հուսեյին բեգը նոր էր եկել անից և պատրաստվում էր մեկնելու, դեռ ձին չնստած, մի գեղեցիկ կին տեսավ փողոցում և չկարողանալով զսպել իրեն, բարձր ձայնով հարցրեց ձիապանին.

—Ո՞վ է այս կինը։

— Հայերի մեծավորի եղբոր կինն է։

— Վա՜յ,— բացականչեց նա,— Ալեք աղի կինն է։

—Այո, միջնթաղցի Ալեք աղի կինն է։

— Իմ եղբոր կինն է, ուրեմն, իմ ավիզ բարեկամի կինը։

Եվ այդ կինն անցավ այնպես հեզանազ, այնպես սքանչելի, որ Հուսեյին բեգի սիրտը լցվեց կրակով.

— Ես այսպիսի կին դեռ չեմ տեսել,— շշնջաց նա, գունատվեց և, եթե չամաչեր ու չքաշվեր, կմոտենար, բայց ինչոր բան կասեցրեց նրան, ինչ-որ բան պահեց նրան և նա, գուցե առաջին անգամ կյանքում կին արարածի ներկայությամբ վախեցավ, շփոթվեց։

Երբ կինը հեռացավ, նա տուն դարձավ, և հրամայեց չանհանգստացնել իրեն։

Ճիշտ է, այդ օրից հետո երկար ժամանակ էր անցել, բայց ժամանակն այստեղ այն չէր, ինչ որ կարող էր լինել մի այլ տեղ։ Ինչքան շատ էր անցնում այդ ժամանակը, այնքան ավելի շատ էր անհանգստանում նրա սիրտը։ Նա համար-

յա երբեք չէր նկատել Ալեք աղին, չգիտեր անգամ նրա գոյության մասին, բայց հիմա, սրանից հետո, ոչ միայն նկատեց, այլև ատեց նրան իր հոգու ամբողջ ուժով և պատրաստ էր պատառ-պատառ անել գյավուրին, մարմինը գցել շների առաջ։ Նա լավ էր հասկանում, որ այդ բոլորը շատ վատ է վերջանալու։ Նա չէր ճանաչում Ալեք աղին, բայց գիտեր, որ նա հայ է և պարզ էր նրա համար, թե ինչ է նշանակում այդ։ Արդեն քանի-քանի անգամ աղքատի հագուստով մոտեցել էր նրա՝ Ալեք աղի տանը։ Քանի՜ անգամ էր կլեկչու մոտ պարկը ուսին բարձրաձայն կանչել՝

—Պղինձ կլայեկեմ, թավա ու թասեր...

Քանի՜ անգամ էր գզրարի աղեղն ու թակը թևի տակ մտել նրանց բակը.

—Բուրդ գզեմ, բամբակ գզեմ։

Հուսեյին բեգը չէր համարձակվում «հերոսաբար, բռնությամբ» տիրանալ գեղեցկուհի Մարանային, նա կորցրել էր իր քաջությունը, երկչոտ էր դարձել, և ինքն էլ չէր հասկանում իր վիճակը, չգիտեր ինչի՞ց է այդպիսին դարձել։

Գեղեցիկ էր Մարանան, լեռների եղնիկի պես գեղեցիկ, լեռների ձյուների պես ճերմակ, լեռնային արևի պես այրող ու հպարտ։ Մութ երկնքում փայլող մի աստղ էր Մարանան, հմայիչ մի հեքիաթ, չքնաղ մի երազ։ Անհասկանալի և դաժան մի հայտնություն երկրի վրա։ Նրա ժպիտը, նրա ծիծաղը, ձայնը, ապա էն «անաստված քայլվածքը»։ Ում ասես, որ խելքից չէր հանի Մարանան, դաժան Մարանան, անգութ Մարանան։

— Ալլահի պատիժն է այս կինը,— ասել է Հուսեյին բեգը։— Եթե ցանկանա մի հայացքով միայն, իմ այս խեղճ Հուսեյնը մոխիր կդարձնի։ Ինչու՞ և ինչպե՞ս սիրեցի ես այս անհավատ կնոջը։ Ինչո՞ւ դու սրան ցույց տվեցիր ինձ, ալլահ, ահեղ փորձության ենթարկելու համար, թե՞ իմ հոգեառ հրեշտակն է սա, որ ուղարկել ես հոգիս առնի։ Առ, սրա ձեռքովը առ հոգիս, ալլահ, սրա ձեռքերի մեջ մահ չկա, սրա ցնչի մեջ դրախտն է ապրում, սրա ձայնի մեջ է իմ հավատն ու սերը։

—Այդ մարդկային չէ, Հուսեյին բեգ, ալլահի գործն է,

մենք չենք հասկանա,— մխիթարում էր նրան օգնականը,— ինչ լինելու է՝ կլինի։

—Թող լինի, բարեկամս, թող լինի։ Թող մեռնեմ, միայն թե նրա ձեռքով, նրա համար։ Իսկ եթե վիճակված է ինձ երկար ապրել, ապա թող ապրեմ դարձյալ միայն նրա հետ, նրա համար։

Իհարկե, ավազակապետը ոչինչ թաքցնել չկարողացավ իր տղաներից, նրանք ամեն ինչ տեսան ու հասկացան։ Եվ նա թաքցնել չէր կարող։ Խենթացել էր հսկա տղամարդն ու խեղճացել։ Շարիֆ օղլի Հուսեյին բեգը խլահավի պես բթացավ։

Օգոստոսի քսանին, 1878 թվականի այդ շոգ օրը, Կարին քաղաքից ժամանած հատուկ սուրհանդակը մտավ Խոտորջուր և գնաց Մեծավորի տուն, նրան հանձնեց Կարինից բերած հրամանը։ Վալին Մեծավորին կանչում էր Կարին։

«—Տեր Կարապետ Ջախալյանին, ներկայանալ Կարին՝ անմիջապես»։

— Ինձ կանչել են Կարին,— ասաց Մեծավորը Խոտորջուրի ավագներին,— քանի օրով և ինչու՞, չգիտեմ։ Սուրհանդակ ուղարկեք Համշեն, Կոպալ օղլի Հուսեյին բեգի մոտ և խնդրեք, որ իր տղաներով անմիջապես տեղափոխվի Խոտորջուր։ Ես մի երկու օր դեռ կմնամ այստեղ։ Եթե չկարողացա տեսնել Կոպալ օղլուն՝ դուք կանեք ինչ որ անհրաժեշտ է։

Մեծավորը խնդրում է Կոպալ օղլուն, որ նա մի տասը օրով տեղափոխվի Միջնթաղ իր մարդկանցով պահակություն անի, գյուղը պաշտպանի Հուսեյին բեգից՝ մինչև իր վերադարձը։

Երկու օր հետո Կոպալ օղլի Հուսեյինը դուրս է գալիս Համշենից և ճամփա է ընկնում դեպի Միջնթաղ։ Համշենցիները դեռ հիշում են, որ իրենց պապերը քրիստոնյա հայեր են եղել, որ իրենց բռնությամբ են թուրքացրել, որ իրենք դեռ չեն մոռացել հայերենը, քրիստոնեական շատ ծեսեր դեռ կատարում են։ Որ մինչև հիմա ամառանոց են գնում միայն խոտորջուրցիների հետ, և ինչպես հնումն էր՝ արոտավայրերի մեջ տարբերություններ չեն դնում։ Լավ դրացիներ են, սրտացավ ու մոտիկ։ Այդ մտերմությունը երևի գալիս էր նրանից, որ Համշենը հավատափոխ եղավ, թրքացավ, համեմատաբար

ավելի ուշ՝ տասնիններորդ դարի սկզբներին։ Այդ տարիներին անգլիացի մի դեսպան այցելել է Համշեն և վկայում է.

«Ազգաբնակչության մեծամասնությունը հայեր են. իսկ ամբողջ շրջակայքի մահմեդականներն էլ հայկական ծագում ունեն»։

Օգոստոսի քանչորսի ուշ երեկոյան Կոպալ օղլին իր տղաներով մտավ Միջնթաղ։ Եվ որովհետև ուշ էր արդեն, հոգնած էին, տեղավորվելուց հետո ինքն ու տղաները քուն մտան։ Նույն այդ օրը Շարիֆ օղլին տեղեկացավ, որ Մեծավորը մեկնել է Կարին և չիմանալով, որ Միջնթաղ է ժամանել Կոպալ օղլին, լավ առիթ համարեց և իր տղաների հետ մտավ Միջնթաղ։ Երբ հասավ գյուղի դիմացի Հոսնատակ կոչվող աղբյուրի վերևի թավուտները, որոշեց սպասել այնտեղ այնքան ժամանակ, մինչև մութն ընկնի։ Երբ մութն ընկավ, մարդիկ փակեցին իրենց տների դռները, Հուսեյին բեգը դուրս եկավ թաքստոցից, անտառի միջով իջավ գետափ և պարտեզների մեջ օձի նման սողալով, աննկատ հասավ Մեծավորի եղբոր՝ Ալեք աղի տունը։ Նա լավ գիտեր, որ տանը ոչ ոք չըկար, որ տանը մենակ Մարանան էր մնացել։ Քիչ սպասելուց հետո, երբ լուսինը մտավ ամպի տակ, ինքը սողաց Մեծավորի եղբոր տունը, տղաներին թողեց միջանցքում, մտավ ննջարան։ Քնած էր չքնաղ Մարանան։ Քնած էր հանգիստ, կիսաբաց։ Ամպից ծնված մի թեթև ստվեր խաղում էր նրա մերկ ուսերի վրա։ Շարիֆ օղլին նայում է նրա ձյունափառ բաց կրծքին, մարմարակերտ ձեռքերին և քիչ էր մնում մտաթափվեր։ Նա երկար ժամանակ այդպես հմայված, անթարթ աչքերով նայում էր իր դեմը պառկած գեղեցկուհուն և չէր կարողանում մի պահ գոնե հանգստացնել վիրավոր ճնճղուկի նման թպրտացող սրտիկը։ Այդ նրա կյանքում առաջին գերությունն էր.

«Տեր Աստված, տեսի՞լք է կինն այս, թե՞ դժոխային մի փորձություն»։— Դաժան կյանքը մի ահավոր վիհ էր բացել այդ պահին նրա առաջ և զարդարել այն ամենահրապուրիչ գայթակղություններով։ Բայց վիհը՝ վիհ է, անկման ու կործանման չարագուշակ ամենակուլ մի փոս՝ ու՞մ առաջ չի բացվելու այդ փոսը։ Ամենաքաջարի, ամենահերոսական մարդիկ անգամ անշարժ դիակներ են դառնում այդ փոսում։ Եվ

նա մի պահ սարսափով նայեց։ Հետո վեր կացավ տեղից, մի քայլ արեց միայն, մի թույլ քայլ։ Եվ հենց այդ պահին դուրս թռավ իր անկողնուց գեղեցկուհի Մարանան կացինը ձեռքին և որքան ուժ ուներ հարվածեց առջևը կանգնած շփոթված մարդուն։ Կացինը վրիպեց։ Ներս թափվեցին Շարիֆ օղլու տղաները։ Մարանան երկրորդ, երրորդ անգամ արդեն չվրիպեց, չվրիպեց նաև վերջին անկյարին խփելիս... Եվ զարհուրած, խելքը կորցրեց ավազակապետը, մոտիկից, շատ մոտիկից կրակեց և իր աչքով տեսավ գեղեցկուհու թյան տապալումը, սարսափեց, մորթվող անասունի նման բառաչեց, դուրս նետվեց և չհասկացավ, թե ինչպե՞ս և երբ հայտնվեց իր Հոմուստում։

Եվ լույսը բացվեց, բացվեց Միջնթաղ գյուղում որպես արյունոտ լուսաբաց։

Խոտորջուրցի կանայք, երբ ամուսիններին ուղարկում էին օտարություն, իրենց անկողիններում պահում էին լազի կացիններ, այդ էր նրանց պապենական սովորությունը։ Նրանք այդ կացնով պարտավոր էին պաշտպանել իրենց և իրենց ամուսինների պատիվը։ Խոտորջուրցի կինը կատաղի էր ինչպես վագր, քնքուշ ու հմայիչ՝ ինչպես պախրա։ Բնությունը նրան օժտել էր ոչ միայն ուժով, կորովով, այլև խելքով և խստությամբ։ Քաջարի մարտիկներ էին խոտորջուրցի կանայք և նրանցից շատերն ընկան հրացանը ձեռքներին, կռվի դաշտում, սվինամարտի ժամանակ, հայ-թուրքական կռիվների օրերին։

Շարիֆ օղլու կենդանի մնացած տղաները, որպեսզի կարողանան փախչել, հրդեհեցին գյուղը բոլոր կողմերից, գյուղում խուճապ առաջացրին։

Կոպալ օղլու տղաները ուշ արթնացան, չիմացան որտեղի՞ց էր վտանգը գալիս. ու՞ր գնան, ի՞նչ անեն։ Հրդեհը տարածվում, կրակի ճարակ էր անում ողջ գյուղը։ Ահավոր իրարանցման մեջ ոչ ոք ոչինչ չկարողացավ հասկանալ։

Արագոտն խելառ Բագասը մեկ օրվա ընթացքում հասավ Կարին և ամեն ինչ պատմեց Մեծավորին։ Մեծավորը անմիջապես դիմեց Պոլիս և հաջորդ օրը սուլթանական հրամանագիր իջեցվեց Էրզրումի վալուն, բանակի հրամանատարին և ոստիկանությանը.

«—Հրամայվում է... Ամենավճռական միջոցների դիմել Շարիֆ օղլու ավազակախումբը բռնելու և վնասազերծելու համար»։

Այդ նպատակով Հունուտ ժամանեց զինվորական մի վաշտ։ Եվ հենց առաջին գիշերը վաշտի հրամանատարին ներկայացավ ինքը՝ Շարիֆ օղլին։ Նրանք կանգնեցին դեմ դիմաց, նայեցին իրար այնպես, կարծես հին ծանոթներ լինեին և Շարիֆ օղլին փառք տվեց ալլահին, որ նրա դեմ ուղարկված մարդն իսկական մուսուլման է։

— Ես զգում էի,— ասաց վաշտի հարամանատարը,— զգում էի, որ Հունուտում ինձ սպասող մարդն այն մարդն է, որի մոտ շտապում էր իմ անտեղյակ սիրտն անհուն բերկրանքով։ Փառք ալլահին, սիրտս ինձ չխաբեց։

Լուսաբացին Շարիֆ Օղլին հեռացավ վաշտի հրամանատարի տնից, նրա սեղանին թողնելով մի փոքրիկ, բայց ծանր քսակ։

Երբ լույսը բացվեց, հրամանատարին այցելեց Խոտորջուրի մեծավոր Տեր-Կարապետը։ Նա վերցրեց խելառ Բագաչի թևի տակի քսակը, դրեց հրամանատարի սեղանին։

— Ես համոզված էի, հիմա ավելի վստահ կարող եմ ասել, որ հայ ժողովուրդը խելամիտ և հյուրասեր ժողովուրդ է։ Ես գալիս էի, և ահա եկա։ Եկա փրկելու ձեզ զանազան ավազակախմբերի, շարիֆների հարձակումներից ու համոզված եմ, որ հայերը կվստահեն ինձ և կթողնեն, որ ամեն ինչ անեմ այնպես, ինչպես հարկն է, ի փառս ազգային զենքի և ազգային հպարտության։

Նա վերցրեց սեղանին դրված քսակը, փառք տվեց ալլահին, ժպտաց, արցունքոտ աչքերի խորքից՝ շարբաթից էլ քաղցր ժպիտով։

Իհարկե, վաշտը ժամանել էր Մեծավորի պահանջից հետո, հետևապես, վաշտը պահելու բոլոր ծախսերն ընկնում էր խոտորջուրցիների վրա։ Ծախսերը մեծ էին և ահավոր։ Բայց ահա անցնում են օրեր, շաբաթներ, ամիսներ, վաշտի հրամանատարի քաղցր ժպիտներից բացի, ուրիշ ոչինչ չեն տեսնում խոտորջուրցիները։ Մի բան միայն նկատելի էր, որ Շարիֆ Օղլին այլևս հարձակումներ չէր գործում հայերի վրա, նույնիսկ հպարտանում էր, որ մի ժամանակ շատ մոտ է եղել

հայերին և հիմա էլ «գնահատում և սիրում» է նրանց, որ հայերը կներեն իրեն պատանեկան չարությունների համար, կըներեն ծնողի, մեծի իրավունքով։ Ինքն էլ պատրաստ է ծընկաչոք լալ անառակ ժառանգի, անարժան որդու նման, որ տուն է դարձել և խնդրում է ներել։ Եվ նա սկսեց զբաղվել ձիախաղերով, քեֆեր էր սարքում և իր քեֆերին նույնիսկ հայեր էր հրավիրում։ Մեծավորն, իհարկե, տեսնում, հասկանում էր այս բոլորը։ Հասկանում էր, որ ավելի ահավոր մի բան է մտածել վալին, որ վաշտապետը կատարում է նրա հրամանները։ Որ Շարիֆ Օղլին գտնվում է հզոր մարդկանց պաշտպանության ներքո։ Որ այս խմորը ջուր շատ կվերցնի և աստված գիտե, թե ինչո՞վ կարող է վերջանալ։ Նա դիմում է Պոլսի իր հայրենակիցներին, որոնց մեջ իրավաբաններից բացի կային նաև շատ ազդեցիկ անձնավորություններ։ Գրում, բացատրում, դիմում է Թուրք կառավարությանը, նկարագրում է ստեղծված ծանր վիճակը, և «նրբազգաց» վալին, իր բաժինն առնելուց հետո, ետ է կանչում վաշտի այս հրամանատարին և մի նոր մարդ ուղարկում նրա փոխարեն։

Այդ նոր վաշտապետը «խելամիտ և անկաշառ» մարդ է լինում։ Խոտորջուրցիներից մի քանիսը մինչև հիմա հիշում են նրա ճառը, որ արտասանել էր մեջիթում։ Թուրք հասարակության ժողովում։ Նա պահանջել էր հունուտցիներից իշխանության ձեռքը հանձնել Շարիֆ օղլի Հուսեյին բեգին, քանի որ նա արդեն թաքնվել էր և զանազան լուրեր էին տարածում նրա չքանալու մասին։

— Հակառակ դեպքում Հունուտը կավիրեմ,— ասել էր նա։— Գնացեք, խելացի եղեք, լավ մտածեք։ Ես ձեզ երեք օր ժամանակ եմ տալիս՝ Շարիֆին ու իր տղաներին բերեք և հանձնեք ինձ։ Հիմարություններ չանեք։ Ժամանակների հետ պետք է փոխվեն նաև մեր մոտեցումները։ Հիմա ամեն մի փոքրիկ սխալ կարող է կործանարար լինել Թուրքիայի համար։

Հունուտի տերերն, իհարկե, մարդկանց հետ ոսկիներ ուղարկեցին վաշտապետի մոտ, նվերներ տարան ու խոստացան անսահման հարստություններ, այն ամենն, ինչ կկարողանային անել։ Խնդրում էին գթասիրտ լինել.

— Գյավուրները դաժան մարդիկ են,— ասում էին նրանք,—

—իրենք են տեղիք տալիս, իրենք են այրում իրենց գյուղերը՝ ձեզ վրա գցելու համար։ Թող ապրենք այնպես, ինչպես ապրել ենք մինչև հիմա, ի սեր ալլահի, ի սեր մեր սուրբ կրոնի։

Վաշտի հրամանատարը լսում և մերժում է բոլոր միջնորդությունները ասելով.

— Նոր ժամանակները նոր միջոցներ են պահանջում և նոր մոտեցում։ Գնացեք, բռնեք այդ ավազակներին ու հանձնեք իմ ձեռքը։ Վաղը լրանում է ձեզ տված երեք օրվա ժամկետը, եթե չբերեք՝ գյուղը կկործանեմ։

Հաջորդ օրը, երբ լրացավ պահանջի ժամկետը, վաշտապետը հնչեցրեց Բորոզանը և սկսվեց Հունուտի մահմեդական բնակչության կոտորածը։ Անխնա և դաժան հաշվեհարդար էր տեսնում այս վաշտապետը թուրք ազգաբնակչության հետ։ Ահավոր վիշտ էր պատճառում և ոչ ոքի չէր խնայում։ Սարսափահար հունուտցիները բարձրանում են հայկական թաղամասը, գտնում են հայ քահանային և ոտքերն ընկած խնդրում, որ միջնորդի, որ ոչ միայն իրեն՝ Շարիֆ օղլի բեգին, այլև նրա բոլոր կողմնակիցներին կհանձնեն, եթե այս կոտորածը դադարեցվի։

Հայ քահանան անմիջապես գնում է վաշտապետի մոտ, խնդրում է դադարեցնել կոտորածը և հայտնում է, որ հունուտցիները խոստացել են Շարիֆին և տղաներին հանձնել վաշտապետի ձեռքը և այն էլ հենց հիմա, անմիջապես։ Քահանայի միջնորդությունը հարգվում, կոտորածը դադարեցվում է։ Եվ, երբ երեկոն իջնում է Հունուտի վրա՝ գյուղացիներն իրենք են բերում Շարիֆ օղլի Հուսեյին բեգին ու հանձնում վաշտապետի ձեռքը։ Բերում են նաև նրա տղաներին։ Լուսադեմին հունուտցիները տեսնում են, թե ինչպես բոլորի ձեռքերը կապած, վաշտն ուղեկցում է նրանց դեպի Էրզրումի նշանավոր բանտը։

Խոտորջուրը մի կարճ ժամանակ լարված ուշադրությամբ հետևում էր բոլոր անցնող ու դարձող դեպքերին։ Խոսում էին այն մասին, թե Շարիֆ օղլու օգնականները, որոնք դեռ մնացել են ազատության մեջ, պատրաստվում են վրեժ լուծել հայերից իրենց բեգին բանտ գցելու համար։ Պատմում էին, որ նոր ավազակախմբեր և ավազակներ են դուրս ընկել, որոնք ավելի սարսափելի են, ահարկու՝ քան Շարիֆ օղլի

Հուսալին բեզը, որ հայերը դեռ երկար ժամանակ կհիշեն Շարիֆ օղլուն... Ասում, խրատում էին՝ ներողամիտ լինել, բարի, անքենախնդիր։

— Շարիֆն էլ մեր անառակ որդին է,— խրատում էր մի մոլլա։— Ո՞ր անառակ որդին իր ծնողներին վիշտ չի պատճառի։ Էդ ո՞ր անառակ որդուն է, որին չեն ներել իր հարազատները, երբ նա վերադարձել, ներում է խնդրել։ Աշխարհը միայն բարության վրա է հիմնված, բարին ինքն է հաղթում՝ առանց զենք ու զրահի։ Մի՞թե ձեր Քրիստոսը չի ասել. «Եթե մի երեսիդ խփեն, մյուսն էլ դեմ արա»։ Քրիստոսն է ասել, չէ՞։

— Այո, Քրիստոսն է ասել,— համաձայնվեցին հայերը։

— Հո ես չե՞մ ասում։ Քրիստոսն է ասել։

— Այո, նա է ասել։

— Աֆարըմ...

— Թող նա էլ իր երեսը դեմ անի։

— Էդ արդեն բանի նման չէ,— զայրացավ մոլլան,—էդ ի՞նչ ասացիք, զարմանալի մարդիկ եք։ Ուրեմն ճի՞շտ է, որ դուք, ինքներդ եք խաչել ձեր Քրիստոսին։

Այսպես, մի օր էլ հայտնի դարձավ, որ դատում են Շարիֆ օղլուն և իր տղաներին։

Այս լուրը ցնցեց Էրզրումի նահանգը։ Էրզրում ժամանեցին հայ, հույն, թուրք և այլ ազգերի իրավաբաններ, քննիչներ, դատաստանական խորհրդականներ, թերթերի և ամսագրերի խմբագիրներ։ Քաղաքը լցվեց հետաքրքրասեր և գործարար մարդկանցով, գողերով, ավազակներով, անբարոյական կանանցով։ Վալին հայտարարեց, որ դատարանի մուտքն ազատ է բոլորի համար։ Ով ցանկանում է՝ կարող է ներկա լինել դատավարությանը։ Առանձնապես մեծ բազմություն հավաքվեց այն գյուղերից, որոնք տուժել էին նրա հարձակումներից։ Եկել էին վախկոտ և անվախ մարդիկ, հոգևորականներ, մանր ու մեծ խանութպաններ։ Էրզրումը լցվել էր օտար, մինչ այդ անծանոթ մարդկանցով։ Դատական նիստը տեղի էր ունենում միհարկանի շիկավուն ավազով սվաղված աղյուսաշար տան մեջ, որի վրա ամրացված էր Թուրքիայի արդարադատության զինանշանը, իսկ տանիքի ամենաբարձր տեղում ծածանվում էր թուրքական պետական

դրոշակը։ Ջինվորներ, ոստիկաններ, մոլլաներ, ուսանողներ, հարուստ և աղքատ գյուղացիություն, մի խոսքով, այստեղ էր հավաքվել մարդկային մի հոծ խայտաբղետ բազմություն։

Խոտորջուրից ժամանած պատվիրակությունը գլխավորում էր Տեր-Կարապետ Մեծավորը։ Բարձրահասակ, մռայլ, արծվաքեմ մի մարդ էր նա։ Սգավորի պես հանդարտ ու կամաց քայլերով ներս մտավ դատարանի դահլիճը և արձանի պես անշարժացավ իր տեղում։ Դահլիճում հավաքվածները բոլորն էլ մռայլ էին ու լուռ։ Մեծ դահլիճը նման էր փոթորկից առաջ նոթերը կիտած ծովին, որի ալիքները գալարվում և անհագնանում էին խորքում, իսկ ջրի երեսին ճերմակ փրփուրներ էին բարձրանում և կոհակ առ կոհակ տարրալուծվում։ Սովորաբար դրանից էին հասկանում ճայերը, որ փոթորիկը մոտ է, հեռանում էին ծովից, նստոտում առափնյա ժայռերին և սպասում։ Բայց այստեղ, այս դատարանում փոթորիկներ չեղան, հանդարտ էր դատարանն ու անկիրք։ Ամեն ինչ պարզ էր ու հասկանալի, կանխորոշված ու մտածված։

Ներկայացումը սկսված էր և արդեն երեք օր էր դատարանը նստած էր իր տեղում և «դատում էր»։ Երեք օր, երեք գիշեր Թորթումի, Սպերի, Կիսկիմի գյուղացիները դուրս չեկան դատարանի շենքից։

— Այստեղ դատողն ինքն ալլահն է, դատվողները՝ նրա որդիները։ Ծնողը գիտե ինչպես կդատի իր որդիներին՝ խիստ, անկաշառ, իսլամի բոլոր օրենքներով,— ասաց իր ճառի մեջ դատախազը և դաժանությամբ նայեց մեղադրյալներին։

Դատական հաջորդ նիստերի ընթացքում Խոտորջուրի Մեծավորը պարզ տեսավ ու հասկացավ, որ Շարիֆ օղլու և նրա ավազակների թիկունքում հզոր ուժեր կան կանգնած, որոնք թույլ չեն տա, որպեսզի դատարանը մահվան դատավճիռ կայացնի, և բացի այդ դատարանն ինքը նման ցանկություն չունի։

— Մահվան դատավճիռ չի լինի,— ասաց նա հայ իրավաբաններին,— կատակերգության մեջ ամեն ինչ բարեհաջող է վերջանում, որովհետև ամեն ինչ ձևական է, խիստ պայմանական։ Ամենակատաղի, ամենադաժան անձնավորու-

Թյունը նույնիսկ կարող է ծաղրածուի դեր կատարել և ամեն մի ծաղրածու կարող է նույն հաջողությամբ բռնակալ խաղալ այս բեմում, այս կատակերգության մեջ։ Այստեղ է, որ անկախ իրենցից, այս դատավորներն անլսելի ձայնով հաստատում են այն միտքը, թե վախն ու կամկածը բռնակալության մշտական ուղեկիցներն են, և հենց այս վերջիններն են, որ ծնում են բռնակալներին։ Այստեղ ոչինչ օրինական լինել չի կարող։ Ես պետք է հանդես գամ, պարտավոր եմ խոսել այնպես, որ այն նյարդայնություն և հուսահատություն չպարունակի իր մեջ։ Թողեք նյարդայնանան և աղմկեն թերթերն ու մեջիթները։

Խոտորջուրի Մեծավորը հմուտ իրավաբան էր, շատ լավ գիտեր թյուրքերեն լեզուն՝ թուրքերից էլ լավ։ Գիտեր արաբերեն, անգլերեն, մի խոսքով, օսմանական շարիաթի օրենքներին քաջածանոթ այդ այրն իր ելույթներում թվելով Շարիֆ օղլու գործած բազմաթիվ հանցագործությունները, որակում է այդ ամենը ոչ թե պարզ, սովորական մի ավազակություն, այլ որպես մեծագույն հանցանք օսմանական պետության, իսլամի, կրոնի դեմ, որպես Թուրքիայի թշնամիներին օժանդակող արարք։

— Մեր ազգը միշտ էլ ճանաչվել և արժեքավորվել է այլ ազգերի միջև և նույնիսկ նրանց կողմից, որպես համեստ, խոհական ազգ։ Եվ իրավացի է, որովհետև այդ մեր ազգի իսկական բնությունն է, նրա կատարելություններից մեկը։ Նա երբեք, ինչպիսի առավել վիճակում էլ որ լինի, չի կորցնում իր չափը ոչ էլ դժբախտության, արհավիրքների ժամանակ, որոնք ավելի հաճախ են լինում։ Հայ ազգն արթուն ազգ է, ուշիմ ու չափավոր։ Նա միշտ հավատարիմ է մնում իր դավանանքին, կատարում է իր սրբազան պարտքը աստծո և տերության, ինչպես և իր ընտանիքի ու ընկերավարության հանդեպ։ Ոչ ոք չի կարող մեղադրել նրան ուխտադրժության, անառակության և դաժանության մեջ։ Ես հույս ունեմ, որ մեծ

դատարանը կհաստատի իմ այս ասածը,— ասաց նա և լռեց։ Կարճ ժամանակից հետո դատավորն ասաց.

— Այո, Մուրախաս էֆենդի, ձեր ասածը մերկ ճշմարտություն է։

— Շնորհակալություն, պատվարժան դատավորներ,— ասաց Մեծավորը և այսպես շարունակեց իր խոսքը,— մեծապես ուրախ ենք, որ չենք սխալվում, որ ճշմարիտ է մեր զգացողությունը, մեր արժանապատվության պահպանումը, որ գնահատվում է մեր հավատարմությունը և արժեքավորվում բազմասեր և բազմահմուտ, խոհեմագարդ դատավորների կողմից և պակասեցնում է մեր տագնապների և անհանգստությունների պատճառները։ Ես համոզված եմ, որ Ձեր Եվրոպա կատարած բազմաթիվ ճանապարհորդությունների օրերին դուք առիթ եք ունեցել անձամբ տեսնելու, թե ինչպես են մեր ազգի զավակներն ուղարկվել Եվրոպա, այդ հեռավոր երկրները ուսանելու գիտությունների, արվեստների, ինչպես և լեզուների բնագավառներում և որից հետո նորից ետ վերադարձրել իրենց հայրենիքը, խոսքով ու գործով ծառայելու նրան...

— Ապրեք, Մուրախաս էֆենդի, —ընդհատեց նրան դատավորը,— այդ բոլորը ճիշտ է։

Իհարկե, Մեծավորի խոսքը, նրա ճառը նպաստավոր տպավորություն թողեց ոչ միայն հասարակ Թուրքերի, այլև նրանց վրա, որոնք դատարանում նստած, կամ նրանից դուրս մտածում էին միայն այն մասին, թե ինչպե՞ս անեն, որ Շարիֆ օղլուն փրկեն կախաղանից։ Դատավորն էլ, որ նշանավոր ղադի էր, Մեծավորին լսեց ամենայն լրջությամբ և երբ Մեծավորն իր ճառի մեջ Շարիֆ օղլի Հուսեյին բեգին «քյաֆիր» անվանեց, ընդհատեց նրան խստորեն և ասաց.

— Մուրախաս էֆենդի, Մուրախաս էֆենդի, իմացած եղեք, որ դուք իրավունք չունեք որևէ մուսուլմանի քյաֆիր անվանել՝ ինչպիսի հանցանք էլ որ նա գործած լինի, նա մուսուլման է։

Հեռատես Մեծավորն անշուշտ սպասում էր նման առարկության և, իհարկե նախատեսել էր այդ բոլորը, երբ Շարիֆ օղլուն քյաֆիր անվանեց։ Նա նայեց դատավորներին մի պահ միայն, ապա շրջվեց, դեմքով կանգնեց ժողովրդի կողմը, խոնարհվեց նրանց առջև և ասաց.

— Ձեզ եմ դիմում, ով ազնիվ հավատացյալներ, ասացեք խնդրեմ, եթե որևէ մեկը Ռամազանի սրբազան օրը, երբ աշխարհիս բոլոր հավատացյալ մուսուլմանները, ըստ սուրբ մարգարեի գրած օրենքի, ամբողջ ցերեկը ծոմ են պահում, աղոթքներով են անցկացնում սուրբ օրը, այն մարդը, որ օրը ցերեկով իր նման մի քանի ընկերների հետ քեֆ է անում, վայրի խոզի խորոված ուտում, գինի և արաղ է խմում, ասացեք, ով ազնիվ հավատացյալներ, ասացեք հանուն ալլահի, այդպիսին քյաֆի՞ր է, թե՞ ոչ։

— Քյաֆիր է, քյաֆիր,— մոլեգնությամբ գոչեց հավատացյալ ամբոխը։

— Քյաֆիր է,— ասաց նաև դատավորը և քիչ հետո ավելացրեց,— բալի, բալի Մուրախաս էֆենդի։ Բայց այդ շատ ծանր մեղադրանքը դեռ պետք է հաստատել հենց այստեղ, հիմա, դատարանի առաջ։ Այլապես... Դուք շատ դժվարին և պատասխանատու բեռի տակ մտաք։ Պետք է անմիջապես,— նա նայեց ժամացույցին,— վկաներ ներկայացնեք ձեր ասածը հաստատելու համար, այլապես շատ վատ կլինի ձեր վիճակը։ Ձեր այս հայտարարությունը ինքնըստինքյան կդիտվի դատարանի կողմից որպես ծանրագույն մի հանցանք հավատացյալ մուսուլմանի նկատմամբ և կպատժվի օրենքի ողջ« խստությամբ։ Մուրախաս էֆենդի, հիմա բարի եղեք հաստատել ձեր հայտարարությունը։ Թուրքիայում, հայտնի բան է, քրիստոնյա վկաների վկայությունները մուսուլմանների նկատմամբ չեն ընդունվում, վկայություն տվողը պետք է մուսուլման լինի։

Ինչ կասկած, որ դատավորը վստահ էր, թե ոչ մի մու-

սուլման, եթե անգամ նա առյուծի սիրտ էլ ունենար, չէր համարձակվի վկա դառնալ, պաշտպանելու հայի վկայությունը և չէր համարձակվի դուրս գալ Շարիֆ օղլու պես մի վտանգավոր մարդու դեմ, որովհետև նա գիտե, թե ինչով կվերջանա այդ վկայությունը։

Ինչ խոսք, Թուրքական բարքերին լավ ծանոթ Մեծավորը նախատեսել էր նաև այդ պարագան և իր հետ բերել էր մի քանի իրեն նվիրված մահմեդական վկաներ, նույնիսկ մի հոնուտցի, որի գեղեցկուհի կնոջը տանջամահ էին արել Շարիֆ օղլու լակոտները և մնացել անպատիժ։ Շարիֆ օղլուն քյարիֆ անվանելով Մեծավորը նպատակ ուներ հրապարակորեն այնքան նսեմացնել նրան մոլեռանդ ղադի կրոնավորների աչքում, որ դատարանը ստիպված լինի նրան կախաղան բարձրացնելու վճիռ կայացնել։

Հոնուտցի վկա Յաուզան դուռանի վրա երդվեց, որ ամեն ինչ ճշմարիտ է ասելու։ Ազնիվ մուսուլման Յաուզային սիրում և հարգում էին Հոնուտի բնակիչները նրա համար, որ ազնիվ մարդ էր, բարի և մոլեռանդ հավատացյալ։ Նա իր կյանքում երբեք սուտ չէր խոսել։ Բարձրահասակ էր, կապույտ ջրակալած աչքեր ուներ։ Գլխի գագաթը ճաղատ էր, մեջքը փոքրինչ կռացած։ Նա փորձեց ուղղել մարմնի թեքությունը, թաշկինակով սրբեց գլխի վրա առաջացած քրտինքի կաթիլները և շատերին ծանոթ իր խզված ձայնով ասաց.

— Այո, էֆենդի դատավորներ, ես իմ այս զույգ աչքերով եմ տեսել,— նա ձեռքերը դրեց աչքերին,— թե ինչպես Հուսեյին բեգը անցած Ռամազանի ուրբաթ օրը մեր անտառում, աղբյուրի գլխին, հինգ թե վեց լոթիներով քեֆ էր անում, վայրի խոզի քյաբաբ էր ուտում՝ թու, թու... վրան էլ Քարակամրջի կարմիր գինի էր խմում՝ թու, թու... այս աչքերովս տեսա,— նա զույգ ձեռքերի ափերով ծածկեց աչքերը։ Եվ հաղթիվ տիրապետելով իր դողացող ոտքերին, դուրս գնաց սարսափի մեջ քարացած դատական դահլիճից։

Հաջորդ վկան Սալեջուրի գյուղացի Ջոջ օղլի չորբաշին էր։ Սա հակառակ առաջին վկայի, ավելի ամրակազմ էր, մի-

չահասակ, ավելի համարձակ և խիստ։ Սա ոչ միայն հաստատեց Յաուզի ասածը, այլև այնպիսի բաներ ասաց, որ ավելի խայտառակ էին ու այլանդակ, որոնց կրկնությունն այստեղ պարզապես անհնարին էր։ Վերջում պահանջեց, որ դատարանը հանում ալլահի և հավատի մաքրության, հախ դատաստան անի։ «Այդպիսի մարդուն կախելն էլ քիչ է»,— այս խոսքերով նա դուրս եկավ արդեն զայրույթով լցված դահլիճից։

Համարյա նույն ոճով խոսեցին նաև մյուս մուսուլման վկաները և դատարանը գնաց վճիռ կայացնելու։

Ոսկու քանակությամբ է գնահատվում խաների և կուսակալների հավատարմությունը, նրանք ոսկու արժեք ունեն։ Ոսկով է գնվում նաև դատավորների արդարադատությունը։ Ամեն ինչ այս երկրում չափվում է ոսկով։ Ոսկի արժե սերը, ոսկի է նաև ատելությունը, հավատարմությունը, մտերմությունը, ազգականությունը, կրոնն ու անհավատությունն անգամ։ Այդ ազնիվ մետաղի արարքները բոլորովին հեռու են ազնվությունից։ Ոսկու փայլը միայն կարող է խլացնել ամենահզոր ձայները, ոսկու փայլը աչագնացող ձայն կտա անձայն, համր մտքերին։ Ոսկին ամեն ինչ է. և տեր, և աստված, և մահ, և կյանք։

Եվ ահա ուշ երեկոյան դատարանը հայտարարեց դատավճիռը.

— ...Շարիֆ օղլի Հուսեյին բեգին դատապարտել,— կարդաց ճպռոտ աչքերը կկոցելով, թզաչափ, անմազ մի թուրք, հսկա մարդու հավակնությամբ,— հարյուրմեկ տարվա բանտարկության տաժանակիրների բանտում։

Մյուս տասնչորս ավազակների համար նույն դատավճիռը հայտարարվեց։ Ամեն մեկին առանձին-առանձին հարյուրմեկ տարվա կալանքի դատապարտեցին, նույն բանտում կրելու իրենց համար սահմանված պատժաչափը։

— Փառք ամենազոր ալլահին,— ասաց Շարիֆ օղլի Հուսեյինը և խոնարհվեց մինչև գետին դատավորների առաջ։ Նրա, այդ օրերին խամրած աչքերը նորից ստացան իրենց վաղեմի փայլը։

Ժողովուրդը դժգոհ էր դատարանի վճռից։ Նա շատ լավ էր հասկանում, որ այդ վճիռը կայացված է նրա համար, որպեսզի հնարավորություն տրվի Շարիֆ օղլի Հուսեյին բեգին նորից ազատության մեջ լինել։ Ժողովուրդը գիտեր, որ թուրքական բանտից փախչելը դժվար բան չէ այդպիսի մարդկանց համար, իսկ փախուստից հետո ազատ ապրելն ավելի դյուրին է։

Մեծավորը ոչինչ չասաց, նա անսովոր հանգստության մեջ էր, կարծես ոչինչ չէր լսել, ոչինչ չէր տեսել այս մի քանի օրվա ընթացքում։ Նա այս անգամ էլ իր վաղեմի սովորության համաձայն դուրս եկավ թուրքական դատարանի դահլիճից և գնաց դեպի մոտակա սրճարանը։ Նրան հետևեցին նաև լուռ ու հնազանդ նրա ուղեկիցները։ Նրանք շատ լավ էին ճանաչում իրենց Մեծավորին, նման դեպքերում նրա ոգին լցված էր լինում ահավոր դառնությամբ և վճռականությամբ, դրա համար էլ նա լռում էր, երբեմն էլ նույնիսկ ժպտում էր անհասկանալի ժպիտով և այնպես էր մեղմանում ու հանգստանում, ինչպես կարող էր մեղմանալ ու հանգստանալ հավատացյալ մարդը ջերմեռանդ աղոթքի պահին։

Աղմկոտ սրճարանում լուռ մնալ չէր կարելի։ Այստեղ ամեն ինչ շարժման մեջ էր՝ թառն ու քյամանչան ծոր էին տալիս բայաթիների իրենց լորձունքը։ Դհոլը մեխում էր այդ բոլորը մարդկանց ուղեղներում։ Բարձրաձայն զրույցներն ու ոգևորված միջամտությունները, օրվա թերթերն ու վերջին լուրերը, ամեն ինչ հագեցված էր Շարիֆ օղլու դատավարության ոգով։

Անկյունում նստած թուրք ուսուցիչը, կարճահասակ, նիհար, դեղնածամ, ժիր, երիտասարդական շարժուն աչքերը փայլեցնելով, բացատրում էր իր մոտ նստածներին.

— Թուրքիայի մարմնի վրա խոցեր կան, բորոտում է այն,— ասում էր նա մեղմաձայն և խորհրդավոր,— նրանք անհանգստացնում, ցավ են պատճառում Թուրքիային, եթե ժամանակին չհեռացվեն այդ խոցերը, Թուրքիան մահացու վերքեր կստանա, կդառնա անբուժելի մի հիվանդ։

Արդեն ժամանակն է. և հիմա շատ վիրաբույժներ հան-

դես կգան, կառաջարկեն իրենց միջնորդությունը, չմոռանաք, տղաներ, ժողովրդական առակը՝ երբ եղն ընկնում է՝ դանակավորները շատանում են։ Այդպիսի վիրահատության համար ուկի ձեռքեր են պետք։ Այսօր դատարանը կտրեց այդ խոցերից մեկը, բայց ոչ այնպես, ինչպես պետք էր։ Այդ շատ վնասակար խոց էր, պետք է այրեին այդ խոցը, այնպես հեռացնեին, որ բոլորովին վերանար։ Փաստորեն ոչինչ էլ չկտրեցին, ոչինչ էլ չհեռացրին Թուրքիայի մարմնի վրայից։ Կարճ ժամանակից հետո այդ խոցը նորից կսկսի գործել և ավելի հուժկու, որովհետև Թուրքիայի մարմինն ավելի թուլացած կլինի։ Հայերի ընդհանուր ջարդերի համար թուրքերին են պատասխանատու համարում, իսկ թուրքերին և քրդերին սպանելու համար պատասխանատու չեն համարում, գուցե թուրքի և քրդի արժեքը դիվանագետների համար, ողջ մարդկության մեջ հավասար է զերոյի՞։ Եթե այդ այդպես է, ապա մեր դատարանի պարտքն էր այդ արժեքը բարձրացնել։ Մենք հիմա աճպարարություններ անելու իրավունք չունենք։ Ռուսական վտանգը մեր աչքի առջև է, մեր քթի տակ։

Մի թուրք պատմաբան դեյլանի ծխի մեջ պարուրված խոսում էր իր մտերիմների հետ, ահագին, լայն աչքերը բացած, շատ կարևոր մի բան հաղորդողի նման, և այնքան բարձր, որ չլսել չէր կարելի.

— Սուլթան Մահմեդ չորրորդը 1623 թվականին փոխարինեց Սուլթան Մուսթաֆա առաջինին։ Այս թագավորը կլոր դեմք ուներ, սև մազեր, մեծ-մեծ աչքեր։ Սա միջահասակ, սաստիկ ուժեղ մարդ էր։ Բնավորությամբ խիստ էր ու անողոք։ Որսի գնալիս 30,000 մարդ էր տանում հետը։ Իր քաջության հետ միաժամանակ նաև վախկոտ էր սաստիկ, անգութ սիրտ ուներ։ Ասում են թագավորել է 17 տարի և այդ ժամանակամիջոցում հարյուր հազար հոգի է սպանել։ Իր հարազատներին ու եղբայրներին անգամ չի խնայել։ Մի անգամ Վենետիկից եկած մի վաճառական իր տան պատուհանից հեռադիտակով նայել է թագավորի պալատին, թագավորն իմացել է և նայելու համար միայն, հրամայել է բռնել վենետիկցուն և կախել այն պատուհանից, որտեղից նա համարձակվել է նայել պալատի կողմը։ Ֆրանսիական դես-

պանի թարգմանչին ցցի վրա նստեցրեց նրա համար, որ Թուրքական դատարանում հանդես էր եկել որպես վկա և պաշտպանել էր ֆրանսիացի մի վաճառականի։

Նա կախել է տվել նաև իր ամենամոտ, գործակից մարդկանց, շատ նշանավոր մուսուլմանների, ոչ ոքի չի խնայել, Կոստանդնուպոլիսը պահել է սարսափի մեջ։

— Այս շարիֆ օղլիները ապաշնորհ մարդիկ են,— շշընջում էր մեկ ուրիշը,— սա և սրա պեսները շարքային մսագործներ են։ Ես կուզենայի, որ այդպիսիներից մի քանիսին կախեին՝ Թուրքիայի պատիվն ու հեղինակությունը Եվրոպայի աչքում բարձրացնելու համար։ Շարիֆ օղլիներ շատ ունենք, եթե այս մեկն էլ գոհվեր, այդ միայն մեր օգուտը կլիներ, մեր պետականության ամրացումը և այդ կլիներ մի զորավոր խցան անհավատների բերանները փակելու համար։ Գազան է, ավազակ է, մենք էլ ենք այդ ասում, և այն, ինչ անում է այդ ավազակը, մեզ էլ դուր չի գալիս։ Եվ ահա, նայեցեք, մենք նրան կախաղան ենք հանում,— այսպես կասեի ես, որովհետև միևնույնն է, այդ ավազակի տեղը, հենց նույն օրը զբաղեցնելու էր մի ուրիշ ավազակ, որ գուցե ավելի «մարդասեր» լիներ։ Ճկուն միտք, ճկուն քաղաքականություն, գունավոր, հրապուրիչ քաղաքականություն, շահմար օձի մաշկի պես գեղեցիկ քաղաքականություն։ Մենք ռուսներ չենք և ոչ էլ պնդաճակատ անգլիացիներ և բնավ էլ նման չենք կնամոլ ֆրանսիացիներին, որոնք իրենց քաղաքականության վրա անգամ կեղծամներ են հագցնում և օծանելիքներ ցանում։ Եթե ես լինեի այս գործի ղեկավարը, չէի լսի տգետ հոգևորականությանը։ Նրանք խորտակել և հիմա էլ շարունակում են խորտակել երիտասարդ Թուրքիան իր ծննդի օրը։ Միևնույնն է, ծնվելու է այն, ինչն արդեն գտնվում է արգանդում։

— Այո, այն, ինչ-որ արդեն արգանդումն է՝ կծնվի,— ասաց մոծակաձայն մի մարդ,— բայց ի՞նչ կծնվի։

— Վեր կացեք,— ասաց Մեծավորը,— գնանք այստեղից։ Սրանց պարապ խոսքերը լսելու բաներ չեն։ Մենք հիմա հոգսեր շատ ունենք։

Կարինից հեռանալուց առաջ ըստ ժամանակի «բարոյական չափանիշների» Մեծավորը պարտավոր էր այցելել կա-

չանավորին բանտում։ Այդ սովորություն էր, հին սովորություն, որ պահպանվում էր դարերով։ Մեծավորը գնաց շուկա, գնեց ինչ-որ պետք է գնվեր նման պարագաներում, խելառ Բագասի շալակը տվեց և ուղևորվեց դեպի բանտ։

Նրան առաջնորդեցին այն բանտախուցը, որտեղ նստած էր Շարիֆ օղլի Հուսեյին բեգը։

Երբեմնի քաջ, «հերոսական» ավազակապետը, որ վագրի պես ահ ու սարսափ էր տարածում «իր ջունգլիներում», չափազանց ընկճված էր։ Այդ պահին, երբ Մեծավորը ներս մտավ, Հուսեյին բեգը նման էր ծեծված ավանակի։ Նա հաստ շղթաներով գամված էր զնդանի սալապատին և իր բոլոր բնական կարիքները հոգում էր նույն այն տեղում, որտեղ ուտում և քնում էր։ Բանտախցի զարհուրելի գարշահոտությունը տանել չէր լինում,. Մեծավորը հազիվ էր զսպում իրեն, նա նայեց իր մանկության ընկերոջը, գութը շարժվե՞ց, թե խղճա՞ց և ասաց.

— Հուսեյին, բարեկամս, այս ի՞նչ է քո հալը։ Ի՞նչ կլիներ, եթե ժամանակին լսեիր ինձ և ապրեինք միասին որպես լավ հարևաններ…

— Սուտ ես ասում, գյավուր, նա վեր թռավ տեղից վիրավոր լուսանի կատաղությամբ, մոլեգնաբար առաջ նետվեց, բայց նրա ձեռքերը ոչնչի չհասան։ Նա դրանով շաչեցրեց միայն իր շղթաները և այնպես լարեց իր պիրկ մկանունքը, որ քիչ մնաց ուժեղ լարվածությունից կտրատվեին աղեղնաթելի նման և թափվեին գարշահոտ կեղտոտության մեջ։ Նա նայեց Մեծավորին ահավոր կատաղությամբ և փրփրաբերան մռնչաց.

— Քյարիֆ մուրախաս, լավ իմացիր, մեր կռիվը դեռ չի վերջացել։ Եվ ողջ խոտորջուրն էլ թող իմանա այդ։ Ես մեկ է կգամ, կգամ մեր հաշիվները փակելու։ Եվ այն ժամանակ վայ ձեզ, անհավատ շներ։ Ձեր տեղն ու ձեր անունն անգամ չի մնա աշխարհիս երեսին։

— Եթե գալդ լինի՝ տեսնելդ էլ կլինի,— պատասխանեց Մեծավորը մոլեգնած ավազակապետին,— կնասպան անասուն։ Եկ, եկ, որ երախդ ջարդենք ու լեզդ շներին գցենք։

Տուն դարձավ Մեծավորը, հավաքեց ազդեցիկ խոտորջուրցիներին.

— Մենք պետք է կանոնավոր հսկողություն սահմանենք մեր գյուղերի վրա։ Շարիֆ օղլու դատավարությունն ապացուցեց, որ նրա գործունեության շրջանակներն ավելի կընդարձակվեն, եթե նույնիսկ նա ինքը ազատ չարձակվի, հրապարակ կգա մի ուրիշ ավազակապետ նրա գործը շարունակելու համար։ Բայց ես համոզված եմ, որ շուտով նա նորից կհայտնվի մեր կողմերում և այս անգամ ավելի կատաղի կլինեն մեր հանդիպումները նրա հետ։ Նա լցված կլինի վրեժխնդրությամբ։ Ոչ միայն պետք է սահմանել պահակային հսկողություններ մեր սահմանների վրա, այլև մշտական զենքի տակ պետք է պահել մի պատկառելի խումբ մարդկանց, որոնց որտեղ լինելը չպետք է իմացվի։ Բացի այդ պետք է զինենք մեր գյուղացիներին։ Ոչ ոք առանց զենքի դաշտ չպետք է գնա, լեռները չբարձրանա։ Եթե հնարավոր է պաշտպանության այդ արվեստին պետք կլինի վարժեցնել նաև մեր երեխաներին ու կանանց։ Մենք քիչ ենք, շրջապատված ենք ամեն կողմից, մենք պարտավոր ենք պաշտպանվել, եթե ուզում ենք ապրել։ Հիշեցեք մեր չքնաղ Մարանայի օրինակը։ Լավ կացինը մեր կանանց անկողնուց դուրս չպետք է գա, կացինների կողքին այսուհետ դրեք նաև ձեր հրացանները, ձեր դաշույնները։ Ուշադիր եղեք ձեզ չխաբեն, մարդկանց արարքը միանգամից չի հասկացվում։ Այսօրվանից խիստ կարգապահություն պետք է սահմանել բոլորիս համար, խնդրում եմ չխախտել այն, խնդրում եմ լսել և հնազանդվել։ Մեզ միայն այս կարող է փրկել։

Բավականին երկար խոսեց Մեծավորը․

— Ես լավ եմ հասկանում, որ Շարիֆ օղլու՝ ինձ ասած խոսքերը դատարկ սպառնալիքներ չեն։ Նա ճիշտ էր ասում, ասաց այն, ինչը չպետք է ասեր, մեկ կամ երկու բուռ ոսկի է պետք նրան, որ ազատ արձակվի բանտից։ Իհարկե, այս ոսկին վաղը կտան, և նա կգա ու նորից կկանգնի մեր դռների առաջ։ Մենք նորից բողոքել չենք կարող, այդ նման կլինի լացկան մարդուն և իշխանավորներն այլևս մեզ չեն լսի, չեն հավատա, և իմաստ էլ չի ունենա բողոքել․ «—Գայլի վիզն ընդուր է հաստ, որ իր դատն իր ձեռքովն է անում»։ Ինքներս պետք է դատենք դրանց մեր դատարանով։ Իսկ մեր դատն

առայժմ կլինի մեր պաշտպանությունը։ Խիստ, դաժան պաշտպանությունը, այլևս չենք խնդրի, չենք բողոքի, հույսներս նրանց «բարության» վրա չենք դնի։

— Ինչպե՞ս անենք, Տեր-Կարապետ, ինչու՞ չխնդրենք, եթե երեխան լաց չլինի, ծիծ չեն տա։

— Այո, այդ իրավացի դիտողություն է, բայց մեզ համար չէ, խնդրում եմ չմոռանաք, միշտ չէ, որ լացող երեխային ծիծ են տալիս, լինում է նաև այնպես, որ լաց լինող երեխային ծեծում են։ Եկեք այլևս լաց չլինենք։

Ամառն անցավ։ Սկսեցին աշնան անձրևային օրերը, եղանակները ցրտեցին, թախիծն ու կարոտը պարուրեց Խոտորջուրը։ Սպասում էին պանդուխտների վերադարձին, բերքը հավաքել, մառաններն էին լցրել, դուռ ու պատուհան ամրացրել, գերանդին ու մանգաղը պատից կախել։ Այդ տարին ծանր ու տհաճ լուրեր էին գալիս ամեն կողմից, մեկը մյուսին հակասող և անորոշ։ Աշնանային մաղող անձրևի տակ մինչև վերջին թելը թրջված խելառ Բագասն իրեն գցեց Մեծավորի մոտ և ասաց.

— Շարիֆ օղլի Հուսեյին բեգը արդեն ազատության մեջ է, նրան տեսել են համշեցիները։ Հունուտցի մի ծերուկ նույնիսկ խոսել է հետը։ Նա խոստացել է ծերուկին, որ մոխիր կդարձնի Խոտորջուրը, իսկ խոտորջուրցիներին դիակներ։ Նա հիմա գտնվում է Ճորոխի հովտում։ Նա սպառնացել է նաև մահմեդականների այն ընտանիքներին, որոնք դատավարության ընթացքում համարձակվեցին դուրս գալ իր դեմ։

Մեծավորը կանչեց Խոտորջուրի ազդեցիկ մարդկանց և հայտնեց Բագասի բերած լուրը։

— Մենք թույլ ենք, անհրաժեշտ չափով զինված չենք, նրա հետ մարտի մտնել չենք կարող,— ասացին Մեծավորին,— այդ մարդու հետ կռվելու և նրան հաղթելու համար պետք է խորամանկությունների և հնարամտությունների դիմել։

Մի քանի օր հետո Բագասի բերած լուրերը ճշտվեցին։ Մահմեդական ընտանիքները թողեցին իրենց գյուղերը և գաղթեցին դեպի Խոտորջուր, նրանք այդ ավազակից ազատվելու միակ ելքն այդ էին համարում։ Հետո ավելի տեղյակ մարդիկ

պատմեցին, թե ինչպես է եղել, որ Շարիֆ օղլին նորից է հայտնվել ազատության մեջ։

— Երբ Շարիֆ օղլին Հուսեյին բեգին և իր տասնչորս ավազակներին Էրզրումի բանտից տեղափոխում էին Սինոբի բանտը,— ասաց մուսուլմաններից մեկը,— Բայբուրդի մոտակայքում իրենց բնական կարիքները հոգալիս՝ փախուստի դիմեցին։ Միայն ալլահը գիտե, թե ինչպես է պատահել, որ այդ պահին քանդվել են նրանց ձեռքերի և ոտքերի կապանքները։ Շարիֆ օղլին իր ավազակներին է միացրել նաև մյուս կալանավորներին, իրենցից ավելի կատաղի ու արյունարբու ավազակների մի խումբ։ Ինչպե՞ս է եղել այս բոլորը, ոչ ոքի հայտնի չէ։ Կարճ ժամանակից հետո նրանք բոլորն եկել, բնակություն են հաստատել Հունուտում։ Հունուտումն են պահվում Շարիֆ օղլու զենքերը, զինամթերքը, ոսկին և այլ հարստությունները։

Երկու օր հետո խելառ Բաղասը մի նամակ բերեց Մեծավորին, որտեղ գրված էր հետևյալը.

«Փախուստի ժամանակ Շարիֆ օղլի բեգը մտավ Սալեջուր գյուղը։ Հրամայեց շրջապատել այնպես, որ ոչ ոք ներս չմտնի գյուղը և ոչ ոք դուրս չգա գյուղից։ Շրջապատեցին։ Ինքը մի քանի տղաներով գնաց Ջոջ օղլու տունը։ Այդ այն մուսուլմանն էր, որ դատարանում վկայություն տվեց Շարիֆի դեմ և անկեղծորեն պատմեց այն բոլորը, ինչ որ գիտեր նրա մասին։ Ջոջ օղլին պատրաստվում էր անկողին մտնել, երբ հանկարծ շները հաչեցին։ Նա մոտեցավ պատուհանին, նայեց, բակում ոչ ոքի չտեսավ։ Քիչ հետո բացվեց տան դուռը և հողմի նման ներս խոյացավ Շարիֆ Օղլին ու ցցվեց նրա առջև.

— Ջոջ օղլի, հյուրեր ընդունի՞ր,— ասաց նա։

— Հյուրը ալլահինն է,— պատասխանեց սարսափած Ջոջ օղլին։

— Փառք ալլահին, որ բարի մարդ ես և այս ուշ ժամին մեզ թողեցիր քո ծածկի տակ մտնենք։ Ես քեզ երկար չեմ զբաղեցնի, ես շուտով կգնամ քո տնից։ Ես եկել եմ հարցնելու քեզ՝ հիշու՞մ ես արդյոք դատարանում տված վկայությունդ։ Հիշու՞մ ես, էֆենդի։ Հո չե՞ս մոռացել, եթե մոռացել ես, կարող եմ հիշեցնել, բարեկամս, ես քեզ նման անպետք մարդ

չեմ, իսկ եթե հիշում ես, կցանկանայի նորից լսել այն ամենն, ինչ ասացիր այնտեղ, դատարանում, կցանկանայի մեկ էլ լսել։ Այստեղ մենք երկուսով ենք միայն, ուրիշ մարդիկ չկան։ Ես քո հյուրն եմ, քո հավատի եղբայրը։ Կրկնիր, չորբաշի, կրկնիր այն, ինչ ասացիր այնտեղ՝ դատավորին։

— Ինչու՞ ես եկել, ի՞նչ ես ուզում ինձնից,— շշնջաց Ջոջ օղլին։

— Ուզում էի, որ կրկնեիր քո ասածները, եթե չես ուզում կրկնել՝ հարկավոր չէ։ Ես հիմա ոչինչ չեմ ուզում քեզնից, ոչինչ ինձ հարկավոր չէ։ Նայիր ձեռքերիս, տեսնու՞մ ես այս ձեռքերը,— նա պարզեց իր ձեռքերը, տարածեց օդում։— Սրանք շղթայակապ էին։ Ապա մի ուշադիր նայիր սրանց, որոնք օր ու գիշեր դադար չեն ունեցել, աշխատել են քեզ համար, խալամի համար։ Այս ձեռքերն էին, որ պաշտպանում էին քեզ գյավուրներից։ Ապա մի ուշադիր նայիր սրանց, այս սուրբ ձեռքերին, նայիր չորբաշի, շղթաների տեղերը մինչև հիմա դեռ երևում են։ Տեսնու՞մ ես, ասա, տեսնու՞մ ես, թե՝ ոչ։

— Տեսնում եմ։

— Փառք ալլահին, լավ է, որ տեսնում ես, ուրեմն դեռ չես քոռացել։ Այս դու ես արել, դու շղթայակապ արեցիր ինձ, դու բանտ նետեցիր ինձ։ Դու ուզում էիր, որ կախեին ինձ։ Օ՜, ինչպիսի անգթություն, պարոն չորբաշի։ Մի՞թե դու չէիր հասկանում, որ մարդու համար ավելի սարսափելի բան չկա, քան կախաղան բարձրանալը։ Մեզ մոտ միայն շներին են կախում, ես շուն չեմ, չորբաշի, ես մարդ եմ։ Գիտե՞ս արդյոք, թե որքան սարսափելի է այդ, ես չէի ցանկանա, որ քեզ երբևէ կախեին։ Անտանելի բան է կախված ճոճվելը։ Կախաղան հանված մարդը մեռնում է մեկընդմիշտ, կախաղան հանված մարդուն շան տեղ են դնում։ Ավելի վարկաբեկիչ, անարգ մահ չկա այս աշխարհում, չորբաշի։ Գնդակահարված մարդիկ պատվով են մեռնում։ Նրանց հիշում, նրանց մասին խոսում են, իսկ կախաղանը սոսկալի է։ Կախաղան հանված մարդը ջնջվում է ոչ միայն աշխարհի երեսից, այլև հանդերձյալ կյանքից։ Կախված մարդուն դրախտ չեն թողնում։ Նրա տեղը միայն դժոխք է, դժոխքի ամենավատ տեղը, կպրե կարասի մեջ։ Այ, այ, այդ ի՞նչ էիր ուզում անել, այդ ու՞ր էիր ուզում ուղարկել ինձ, չորբաշի։ Դու ամեն ինչ արեցիր, որ ինձ կախեն,

բայց չկախեցին։ Դատավորը չկախեց ինձ, դատավորը, որ միայն կախում էր, ինձ չկախեց։ Այս ինչպե՞ս եղավ, ես ոչինչ չեմ հասկանում, չորբաշի։ Մի՞թե դատավորը կարող է նաև չկախել։

— Հասկանում ես, Շարիֆ օղլի, դու լավ ես հասկանում։

— Ոչինչ չեմ հասկանում, ազնվությամբ եմ ասում, չեմ հասկանում, դու չկարծես, թե ստում եմ, ալլահը վկա չեմ հասկանում։ Հիմա մեր միջև ոչինչ չկա, մենք իրարից պահելու ոչինչ չունենք։ Ես ավազակ էի, ավազակ էլ կմնամ։ Դու ազնիվ մարդ էիր, չորբաշի, քիչ հետո դիակ ես դառնալու։ Տեսնու՞մ ես, որ մեր միջև խզվելու են բոլոր կապերը, այն բոլոր կապերը, որ մինչև օրս կապում էին մեզ իրար հետ։ Հիմա մեզ ոչ ոք չի լսում։ Մենք երկուսով ենք և ալլահն է մեր վկան։ Խոսիր, չորբաշի, խոսիր, բարեկամս։ Ինչ ուզում ես ասա, հայհոյիր, թքիր երեսիս, թույլ եմ տալիս, որովհետև քիչ հետո մեռնելու ես։ Դու ասում ես, որ ազնիվ մարդ ես, չեմ առարկում։ Ես ուզում եմ տեսնել, լսել իսկապես ազնիվ մարդու ձայնը, եթե այդպիսի մարդ կա աշխարհում։ Ապացուցիր ինձ, որ բոլոր մարդիկ ավազակներ չեն, սրիկաներ չեն, ինչպես ես, այլապես ես այն կարծիքին կարող եմ մնալ, թե աշխարհիս երեսին ամենաազնիվ մարդիկ իրենք ավազակներն են, միայն ավազակները, որոնք գողանալ, թալանել, սպանել և առևանգել գիտեն և չեն թաքցնում, որ ավազակներ են։ Նրանք չեն խաբում, սուրբ չեն ձևանում, նրանք երևում են մարդկանց աչքերում այնպես, ինչպես որ կան։ Իսկ դուք՝ ազնիվ մարդիկդ, ստում, խաբում եք, օձի նման ծածուկ եք խայթում։ Դուք էլ եք թալանում, գողանում, բայց ձեր ձևերն այլ են, նենգ են։ Խոսիր, ես լսում եմ քեզ, խոսիր։ Ես ուզում եմ, որ դու ցույց տաս ինձ քո այդ ազնիվ մարդուն։ Կա՞ արդյոք այս կյանքում գոնե մի մարդ, որ ազնիվ լինի։

— Կա, Շարիֆ օղլի, կա։

— Ո՞վ է նա, որտե՞ղ է նա։

— Այստեղ է, քո առջև կանգնած։

— Ուրեմն այդ ազնիվ մարդը դո՞ւ ես։

— Այո՛, ես եմ։

— Այ քեզ բան, ուրեմն ազնիվ է այն մարդը, որը մյուսին կախաղան է ուղարկում։

— Ես կախաղան էի ուղարկում ոչ թե մարդուն, այլ ոճրագործին։ Դու չե՞ս հիշում, ի՞նչ էլ Մի՞թե մոռացար, թե ինչպես պատվազրկեցիր կնոջս, աղջկաս։ Նրանք էլ մուսուլմաններ էին, քեզ նման մուսուլմաններ։ Ես շատ եմ ափսոսում, որ հնարավորություն չունեցա ձեռքովս վրեժխնդիր լինել քեզնից։ Ինչպիսի հաճույքով կախաղան կհանեի քեզ Շարիֆ օղլի Հուսեյին բեգ։ Հիկա կանգնած եմ քո առջև և չեմ կարող ոչինչ անել։

— Կարող ես, չորբաշի։ Ինչո՞ւ չես կարող։ Աղոթիր ալլահին, որ քեզ դրախտում լավ տեղ տա, իսկ ինձ ուղարկի դժոխքի խորքը, ալլահը քեզ լսում է, տեսնում է, նա միակ վկան է մեր այս հանդիպման, նա հենց այստեղից քեզ դրախտ է ուղարկելու և դրախտի ճամփան քեզ համար ես ինքս եմ բացում։ Գնա, բարեկամս, գնա, ես քեզ համար ավելի լավ բան չէի կարող անել, քան այն, որ քեզ համար հավիտենական դրախտային կյանք ստեղծեի։

Այս խոսքերի վրա նա նշան արեց իր տղաներին, չորս տղամարդ ներս մտան։

— Աղոթիր, գյավուր,— ձայն տվեց մտնողներից մեկը։

— Ժամանակ չկա, —ասաց տղաներին Շարիֆ Օղլին,— նա իր աղոթքը կարող է դրախտում անել, ալլահի ներկայությամբ։

Ավազակներն անմիջապես գետին տապալեցին Ջոջ օղլուն, նստեցին վրան և ինքը Շարիֆ օղլին Հուսեյին բեգը իր ձեռքով, եզ մորթելու դանակով կտրեց նրա վզի մկանները, լեզուն հանեց ծոծրակից, ձեռքին բռնած դուրս եկավ պատշգամբ, լեզուն նետեց այդտեղ բերված գյուղացիներին և ասաց.

— Տարեք չորբաշու լեզուն, տարեք տվեք ձեր շներին, թող ուտեն, որպեսզի լավ ու երկար հաչեն։

Խելառ Բագասն այս լուրն իսկույն հասցրեց Մեծավորին։ Մեծավորն անմիջապես խորհուրդ հրավիրեց և այսպես խոսեց.

— Ամեն ինչ իմացանք, ամեն ինչ տեսանք։ Հիմա արդեն մեր հերթն է, նա գալու է մեզ վրա, եթե չդիմադրենք, եթե ինքներս չպատժենք նրան, նա եզ մորթելու դանակը ձեռքիցը չի գցի։ Մեր խնդիրն է՝ շատ լավ ամրացնել մեր

հսկողությունը սահմանների վրա, որպեսզի նա աննկատ չըմտնի մեր հողը և չկարողանա մոտենալ անգամ։ Ամեն մի թիզ հողը պետք է հսկողության տակ պահել, մենք զորք պահելու հնարավորություն չունենք և մեզ թույլ չեն տա մեր զորքն ունենալ։ Մենք պետք է սահմանապահ բանակի փոխարեն՝ սահմանապահ կտրիճներ ունենանք, աչքներս չփակենք, քնով չընկնենք։ Առայժմ այսքան... Խնդրում եմ ձեզ մեր այս փակ խորհրդակցության արդյունքները, որ կկայանա այս գիշեր, գաղտնի պահեք, ոչ ոք չպետք է իմանա, թե ինչի մասին ենք խոսել և առավել ևս, թե ինչ ենք որոշել անելու։ Գաղտնապահությունը հիմա մեր ամենահզոր զենքն է։ Այստեղ ամեն մի հապաղում, ամենափոքրիկ մի անուշադրություն կարող է ճակատագրական լինել մեզ համար։ Պետք է մըշտական հսկողություն սահմանենք։ Այսօր Շարիֆ օղլի բեգն է, վաղը մի ուրիշ բեգ կլինի, սնկերի նման աճում են նրանք այս խոնավ լեռներում։ Մենք պետք է արհեստական գաղթ կազմակերպենք, պետք է այնպես անենք, որ թուրք բնակչությունը հանկարծ սկսի գաղթել և դրա դրդապատճառը պետք է լինեն գոյություն ունեցող ավազակախմբերը։ Գաղթի կազմակերպման գործը ես ինձ վրա եմ վերցնում, դուք ապահովեք մեր սահմանների պահպանությունը։ Եվ լավ իմացեք, եթե որևէ մեկն իմանա, բացի այստեղ հավաքվածներից, որ արհեստական գաղթ ենք կազմակերպելու, մեր գործերը կփչանան, և մենք կընկնենք անելանելի դրության մեջ։ Թուրք իշխանությունը կտեսնի այդ բոլորը, կանհանգըստանա, միջոցների կդիմի գաղթը կասեցնելու համար և այդ ժամանակ մենք մեր գործը կանենք։ Թուրքերը չպետք է իմանան, որ այդ գործի մեջ խառն է մեր մատը։ Իհարկե, այս գործը ժամանակ է պահանջում, հմտություն, և մենք այդ կանենք։

Խորհրդի այս հավաքից մի քանի օր հետո Շարիֆ Օղլին հարձակվեց Խոտորջուրի վրա։ Առաջին զոհը նա իր համար ընտրեց Ճիճապաղ գյուղը, որտեղ ապրում էր Մեծավորն իր ընտանիքով և որոշեց ամբողջովին կործանել գյուղը։

— Մենք ուրիշ միջոցներ չունենք,— ասաց նա իր տղաներին,— սրանից բացի մնացած բոլոր միջոցները մեզ տա-

*նելու են դեպի կախաղան։ Մենք պետք է հիմնովին կործանենք գյավուրների այս բույնը, եթե, իհարկե, չենք ցանկանում ճոճվել հեռագրասյուների վրա։ Այս մեր փրկության և պատվի հարցն է։ Դե, իսլամի հավատարիմ զավակներ, հառաջ, ետ գնալու ճանապարհ չունենք այլևս։*

*Եվ մութ գիշերով նրանք շարժվեցին դեպի Ծիճապաղ գյուղը։ Գյուղը քնած էր հանգիստ մանկական քնով, միայն պահակներն էին, որ չէին քնում, ուշի-ուշով հետևում էին բոլոր ձայներին և նույնիսկ շարժվող ստվերներին, Թռչունն անգամ չէր կարող նստել ծառին, կամ թռչեր ծառից, որ նրանք չտեսնեին, չիմանային։ Կեսգիշեր էր, պահակներից մեկն ազդանշան տվեց մյուսներին, որ նշանակում էր, թե՝ մարդիկ եմ տեսնում։ Այս ազդանշանը կրկնվեց և հասավ Ծիճապաղի պահակներին։ Հետո առաջատար հսկիչները հաղորդեցին, որ շարժվող բանակ են տեսնում, որ շուտով կարող է հասնել իրենց։ Այդ պահին արդեն դեպքի վայրն էր գալիս Ինքը Մեծավորն իր փոքրիկ շտաբով։ Բոլորն էլ արդեն ոտքի էին հանված։*

*Լուսադեմին Շարիֆ օղլի Հուսեյին բեգի հրոսակախումբը մտավ Ծիճապաղ գյուղը։ Ոչ ոքի նրանք չհանդիպեցին, շներն անգամ չհաչեցին։ Գյուղը կարծես նախօրոք դատարկված լիներ։ Բեգը սանձեց ձիուն.*

*— Սա ի՞նչ է,— հարցրեց կողքից ընթացող սպային,— մի՞թե գյավուրները դատարկել են գյուղը։*

*Իսկ ճիշտ այդ պահին Լեչան կոչվող սահմանային անտառում վերջին պատրաստությունն էին տեսնում հայ կտրիճները։ Նրանք քայլ առ քայլ հետևում էին Շարիֆ օղլու շարժմանը և այնտեղ, որտեղ նրա հեծյալները շրջանցում էին վերջին խանդակը և դուրս էին գալիս Ծիճապաղ գյուղը, մի ուժեղ սուլոց կանգնեցրեց նրանց։ Հուսեյին բեգը սանձեց ձիուն և ամբողջ մարմնով փշաքաղվեց։ Ամեն կողմից գնդակների տարափ տեղաց նրանց վրա, շփոթված ավազակախումբը ուրիշ ելք չգտավ, քան այն, որ ետ դարձավ և ձին հեր տալով փախուստի դիմեց։*

*Հաջորդ օրը Մեծավորը իր մոտ հրավիրեց Խոտորջուրում ապաստան գտած մուսուլման ընտանիքների մեծերին և խորհրդի նստեց.*

— Իհարկե,— ասաց նա,— սրանով չեն վերջանա Հուսեյին բեգի հարձակումները, նա պատժվեց, բայց թեթև էր այս պատիժը, նա նորից կգա մեզ վրա։ Հիմա նա ավելի է կատաղել, նա ուզում է կոտորել ձեզ, ձեր կանանց ու երեխաներին,-նա վրիժառությամբ է լցված ձեր նկատմամբ։ Հասկանալի է, մենք չենք կարող թույլ տալ, որ մեզ մոտ ապաստան գտած ընտանիքները տուժեն, կամ հալածանքի ենթարկվեն, մենք մեր կյանքի գնով կպաշտպանենք ձեզ, դուք մեր տանն եք, դուք ձեր հույսը մեզ վրա եք դրել և ինքներդ էլ պատրաստվեք դիմադրելու նրան։ Չեմ կարծում, որ դուք թույլ տաք նրան այդ բանն անելու։ Նրանից ազատվելու միակ միջոցն այն է, որ նրան ոչնչացնենք։ Անպայման կոչնչացնենք, իհարկե, ոչնչացնելու միջոցները շատ են, բայց մենք կընտրենք այն միջոցը, որը զոհեր չի պահանջում ոչ մեզնից, ոչ ձեզնից։ Իմ կարծիքով ամենից հարմարն այն է, որ նրան ոչնչացնենք հենց իր՝ պետության ձեռքով։

Եվ նա շարադրում է իր միտքը ու խնդրում գաղտնի պահել։ Թուրքերը հասկանում են նրան, համաձայնում են։ Այդ ժողովից մի քանի օր հետո, ինչպես պայմանավորվել էին ժողովի ժամանակ, Խոտորջուր գաղթած թուրք ընտանիքները ետ են գնում իրենց տները և մի կարճ ժամանակից հետո այնտեղից ցուցադրաբար սկսում են գաղթել դեպի Ռուսաստան։

— Մենք այստեղ մնալ չենք կարող,— ասում են նրանք պետության ներկայացուցիչներին,— անապահով է մեր կյանքը։ Զանազան ավազակախմբեր շարունակ հարձակումներ են գործում մեզ վրա, սպանում են մեզ, տանում են մեր ունեցվածքը, առևանգում մեր կանանց, գցում մեր պատիվը, պղծում մեր հավատը։ Մենք չենք կարողանում դիմադրել նրանց, նրանք էլ մեզ նման թուրքեր են։ Մենք մեր երկրում, մեր հող ու ջրի վրա մնալ չենք կարողանում, մենք թուրքեր ենք և ստիպված ենք լքել Թուրքիան, փախչել մեր երկրից։ Մեզ համար մի ճանապարհ է մնում միայն՝ անցնել Ռուսաստանին անցած Օլթի շրջանը, քանի դեռ մեր երկիրը չի մաքրվել Շարիֆ օղլու նման ավազակներից։ Մենք կգնանք, և, երբ չեն լինի մեզ անհանգստացնող ավազակախմբերը նորից ետ կգանք ու կապրենք մարդավարի ու ապահով։ Հիմա մենք ստիպված ենք լքել մեր ծննդավայրը, թողնել մեր

սրբություններըւ Եթե իշխանությունները չեն կարողանում մեզ պաշտպանել, էլ ու՞մ ապավինենքւ

Եվ սկիզբ է առնում մի շատ անօրինակ, անսպասելի արտագաղթ բարաշատ երկրից դեպի Թուրքիայի թշնամի երկիրը, դեպի Ռուսաստանւ Ամեն առավոտ դեռ լույսը չբացված, իրենց գոմերից հանում են անասունները, լծում են սայլերը, բարձում ու ցուցադրաբար ճամփա են ընկնում, այնպես են անում, որ բոլորն իմանան, տեսնեն, որ իրենք գնում են դեպի Օլթիւ

Իհարկե, գաղթի լուրը տարածվում է երկրով մեկ, հասնում է իշխանություններին, և նրանք ուղարկում են իրենց ներկայացուցիչներին իմանալու, ի՞նչ է տեղի ունենում, ի՞նչն է ստիպում թուրք ժողովրդին լքել հարազատ վայրերը, ու՞ր է գնում թուրք բնակչությունը և ինչու՞ւ

Իհարկե, Խոտորջուրի Մեծավորը նպաստում է այդ լուրերի տարածմանը, հասցնում է վիլայեթի իշխանություններին, պատմում, նկարագրում թուրք այն ընտանիքների վիճակը, որոնք ստիպված են լքել իրենց տներն ու հողըւ

Մեծավորը հատուկ մարդկանց է ուղարկում Տրապիզոն, այնտեղից էլ Կոստանդնուպոլիսւ Շտապ կարգով լուրը տարածում են ամենուրեք՝ «—Հավատացյալ թուրք ընտանիքները ստիպված են հեռանալ Թուրքիայից ավազակախմբերի առատացման և հարձակումների պատճառով»ւ «Այս ի՞նչ է կատարվում մեր երկրում, թուրքերն իրենց ձեռքով քանդում, ավերում են իրենց մեծ երկիրը, թուրքը թուրքին թշնամի է դարձելւ Քանի՞ տեսակ թուրքեր կան աշխարհում,— հարցնում են թերթերն իրարից և բոլորն էլ կոչ են անում զենքի դիմել, եթե դրա կարիքը զգացվիւ Թերթերից մեկը հիշատակում է Ֆրանսիայի բարձրաստիճան զինվորականի կարծիքը Թուրքիայի և թուրքերի մասին՝ «...Մենք պետք է լինենք ամբողջովին և բացարձակորեն թուրքասեր, ես կասեի ավելին՝ թուրքամոլ»ւ

Քաղաքական հայտնի գործիչ Էդուարդ Սուլիեն ֆրանսիական պառլամենտում հայտարարեց. «—Հաճախ են կրկնում, որ Ֆրանսիան մահմեդական տերություն էւ Եվ դա ճիշտ է»ւ Ու այս բոլորից հետո ինչ որ ավազակներ խայտառակում,

պատվազուրկ են անում Թուրքերին։ Թուրք մտավորականությունը մի կողմից լծվում են երկիրը ողողող աճավոր լուրերի սայլին և ամեն մեկը քաշում է իր կողմը՝ «— Բավական է այս տգետ ու անթափանց խավարը իշխի մեզ վրա,— ճչում են երիտասարդ Թուրքերը,— պետք է քանդել, կործանել այն ամենն, ինչ-որ խանգարում է մեծ Թուրքիային դուրս գալու եվրոպական զարգացման լայն ուղին։ Պետք է ջարդել ու հողմացրիվ անել այդ ավազակախմբերը»։

«Թող ալլահը մեզ պահպանի,— աղաղակում են մուսուլման կրոնամոլները,— Եվրոպայից եկող այլանդակություններից, մեր պատիվն ու ադաթները կործանող այդ անաստված հեղեղից, որ միայն անառակություններ և անբարոյականություններ ու անհավատություն է բերում մեզ համար։ Մուսուլման հավատացյալներ, մի հավատացեք պիղծ, անկրոն ուսյալներին, նրանք ցանկանում են առևանգել, պատվազրկել մեր կանանց ու աղջիկներին, փչացնել մեր տղա երիտասարդությանը, նրանք կործանում են Թուրքիան և նրա հաղթական ոգին։ Պահպանեցեք և խրախուսեցեք մեր քաջարի տղամարդկանց, որոնք մաքրում են մեր հին հողն անհավատներից ու գարշելի աղտոտություններից»։

Եվ այսպես, այս ոգով այնպիսի եռանդով սկսվեց գործը, որը բավականին կրքեր բորբոքեց, մեծ ու աննշան վեճեր առաջացրեց և վերջապես, խոսեցին պարզ ու հասկանալի լեզվով.

— Տեսեք, Թուրք հավատացյալներ, նայեք, որտեղ է հասել վիլայեթների իշխանությունների ապիկարությունը, որ նույնիսկ մահմեդական գյուղացիությունը չի դիմանում, գաղթում է իր երկրից և գնում է անհավատների հովանավորությունն ընդունելու։ Եվ ովքե՞ր են այդ շարիֆ օղլիները, ինչու՞ դրանց չեն կախում։ Ով ալլահ, դու օգնիր հավատացյալ մուսուլմաններին, ազատիր այդ ավազակներից, եթե դատավորները չեն կարողանում։

— Օտարը հողմեր են փչում, օտար քամիներ են լցվում մեր երկիրը։ Այս ո՞վ բացեց մեր երկրի դռները, այս ո՞վ է ներս թողնում անօրեն բարքերը։ Ո՞վ է դժոխք տանում մեր հավատացյալ ժողովրդին, գտեք այդ մարդուն, ով հավատաց-

յալ մուսուլմաններ։ Այս բոլորի պատճառը քյաֆիր հայերն են, քյաֆիր հույները և այն անհավատ ցեղերը, որոնք ստիպում են հավատացյալ Թուրքերին կոտորել իրենց։ Չպետք է խղճալ այդ անհավատներին, խիղճն այս դեպքում մեր Թըշնամին է։ Թող կոտորեն, Թող ոչնչացնեն այդ աղտոտությունները մեր երկրից։

«—Սա արդեն խայտառակություն է,— աղմկեցին երիտ. Թուրքերը,— ի՞նչ աչքով կնայի մեզ հիմա քաղաքակիրթ Եվրոպան։ Ի՞նչ կասեն մեզ, և վերջապես, ովքե՞ր ենք մենք, եղբայրներ, այս ի՞նչ ենք անում։ Պետք է կախաղաններ դնել երկրում և կախել բոլոր ավազակներին»։

Այսպես սկսվեց այդ ահավոր իրարանցումը, որ պատճառ դարձավ մեծամեծ դեպքերի։

Վալին ստիպված եղավ սուրհանդակներ ուղարկել Շարիֆ օղլու մոտ։ Փորձեց հասկացնել նրան, որ պետք է միաժամանակ լռել, անհետանալ, ոչ մի տեղ չերևալ։ Լավ կլինի, եԹե լուրեր տարածի, որ ինքնասպան է եղել, կամ կորել է, չկա։ Թող մի կողմ քաշվի, մինչև տեսնենք ինչո՞վ կվերջանա այս բոլորը։ Միաժամանակ մի խիստ հրաման արձակեց. զորամասեր ուղարկել Խոտորջուր, ավազակապետին և ավազակներին ձերբակալել, շղթայակապ անել և քարշ տալով բերել ու ներկայացնել իրեն,— հրամայեց նաև մի երկու տեղ կախաղաններ կանգնեցնել։ Հրամայեց բոլոր գաղթի ճանապարհները փակել, գաղթականներին վերադարձնել իրենց տեղերը և իր հրամանն ընԹերցել նրանց։ Այն տնտեսությունները, որոնք գաղթի ճանապարհին անասուններ են կորցրել՝ անասուններ տալ, որոնք փող և մի այլ բան են կորցրել, վճարել կրկնապատիկը։ Հոգ տանել, որ վերադարձողները գոհ լինեն, առողջ և կուշտ։

Այդ նույն օրերը, Շարիֆ օղլու բնակատեղից նոր լուրեր էին հասնում Մեծավորին, մի քանի ոսկեղրամի համար նրա մտերիմները վաճառում էին նրան։

— Շարիֆ օղլի Հուսեյին բեգը որոշել է հեռանալ երկրից,— ասում էին նրանք,— նա անցնելու է Վասպուրական, գնալու է Տարոն։

— Նա հեռանում է Ճորոխի հովտից, վաղը դուրս է գալիս։

— Նա թաքնվում է։

— Նա որոշել է անհետանալ, բայց դրանից առաջ որոշել է մեկ անգամ էլ հարձակվել Խոտորջուրի վրա։

— Նա ասել է՝ «—Այնպիսի մի բան պետք է անեմ, որ Խոտորջուրի անհավատները ինձ երբեք չմոռանան»։ Նա ծրագրել է,— շարունակում էին լրաբերները,— խումբը հավաքելուց և վերազինելուց հետո, ինքն անձամբ անցնի մի ընտիր զորամասի գլուխ և հարվածի Ծիծապաղին։

— Այդ ճիշտ է,— հայտնեց մեկ ուրիշը,— բայց նա անմիջապես Ծիծապաղ չի մտնելու։ Նա մտածված կերպով, դիտմամբ կխուսափի ճակատամարտի բռնվելուց, նախ կաշխատի ետ քաշել գյուղից խոտորջուրցիներին, և երբ արդեն բավականաչափ հեռացած կլինեն խոտորջուրցիները, խմբի մյուս մասը, որ բացառապես կազմված է լինելու միայն հեծյալներից, հարավ-արևմտյան անտառների կողմից կիջնի Ծիծապաղի վրա և կսկսի կոտորել գյուղում մնացած կանանց, ծերունիներին, երեխաներին, կհրդեհի գյուղը։ Նա հույս ունի, որ գերիներ կվերցնի և այդ վերցրած գերիների մեջ կլինեն նաև Մեծավորի ընտանիքի անդամները։ Եվ եթե այդ այդպես լինի, մեծ փրկանք կպահանջի։ Եվ միանգամայն պարզ է, որ ոչ Մեծավորը և ոչ էլ մյուս խոտորջուրցիները չեն զլանա, կվճարեն ուզած գումարներն իրենց ընտանիքները փրկելու համար և այն ժամանակ միայն նա կհեռանա այս տեղերից մի որոշ ժամանակով։

Մեծավորի համար ոչ մի գաղտնիք չի մնում։ Ամեն ինչի տեղեկանում, ամեն ինչ իմանում է Մեծավորը։ Ինչպես միշտ, այս անգամ էլ Մեծավորի անփոխարինելի օգնականը՝ դեղին ոսկին, գործում է անվրեպ և հաստատ, որի առջև կանգնել չեն կարողանում նույնիսկ ոսկեշատ բեգերն ու ամենաբարձր իշխանավորները այն երկրի, որտեղ դեռ շատ հնուց ոսկին ամեն ինչ է եղել, և հավատ, և սեր, և հաղթանակ, կրոն, նույնիսկ ավերող ու պարտության մատնող վիթխարի ուժ։

Մեծավորը հրավիրում է Խոտորջուրի ավագներին և նստում է խորհրդի։ Նա մանրամասն պատմում, նկարագրում է, թե ինչ է տեղի ունենում իրենց շուրջը, ինչ է սպասվում և որտեղից, և խնդրում է, որ բոլորն էլ խոսեն, առաջարկեն

իրենց ծրագրերն ու կարծիքները հայտնեն։ Եվ ահա, այստեղ է, որ խոտորջուրցիները բաժանվեցին երկու հակամետ բանակների կամ երկու մասի։ Մի մասը գտնում էր, որ.

— Հարկավոր է անմիջապես գաղթել Խոտորջուրից, հեռանալ Թուրքերից, գնալ ռուսներին անցնող Ղարսի մարզը և այնտեղ հիմնել մի նոր Խոտորջուր։ Միևնույն է, այստեղ մեզ հանգիստ չեն տա, այսօր այս ավազակները, վաղը մյուսները, հետո Էլի կառաջանան և բոլորն էլ իրենց սրերը կփորձեն մեզ վրա։ Իսկ մենք քիչ ենք, համարյա անզեն և անօգնական։ Վերջապես, սրանք պատահական ավազակախմբեր չեն, մտածված, ծրագրված, նույնիսկ պետականորեն և իշխանությունների կողմից ապահովված ցեղասպանություն է։ Եթե պատահում է, որ ցանկանում, կամ ոչնչացնում են որևէ ավազակի, կամ ավազակախումբ, այդ էլ անում են այն պատճառով, որ գործող ավազակախմբերն արդեն «Համը հանում են» վարկաբեկում են իշխանությունները, չափի զգացումը կորցնում, բողոքներ են առաջացնում և վկաներ են Թողնում իրենց ետևից։ Ահա այս է, որ ստիպում է դատավորներին խիստ վճիռներ կայացնել ավազակապետերի նկատմամբ, այն բանի համար, որ լավ և մաքուր չեն աշխատում և ոչ Թե նրա համար, որ ուզում են մեզ պաշտպանել։

Ռուսների մոտ մենք անհամեմատ ավելի լավ կզգանք մեզ, մենք ճանաչում ենք այդ ժողովրդին։ Փառք աստծու, զատ լավ ենք ճանաչում նաև Թուրքերին։ Մենք այս երկրում ոչ միայն վատ ենք ապրում, այլև ոչինչ ստեղծել և զարգացնել չենք կարողանում։ Մենք փաստորեն միայն զբաղված ենք մեր գոյությունը մի կերպ պահպանելով, դիմադրելով զանազան ավազակախմբերի։

Մեռնում են մեզ մոտ արհեստները, արվեստը, մենք այս վայրենիների մեջ վայրենանում ենք։ Համբերությամբ սպասելն ու հույսեր կապելը անհայտ հեռանկարների հետ՝ կործանարար է և վտանգավոր։ Մենք պետք է հեռանանք և և գնանք մեր բարեկամների, մեր հավատակից ժողովրդի մոտ։ Այդ է մեր փրկության ուղին և այդ ճիշտ ուղի է։

Այս լեզվով և այս կերպ խոսեցին նաև բոլոր նրանք, ովքեր համամիտ էին ռուսական տիրապետության ներքո ապրելու մտքին։

Բայց այլ կերպ էին մտածում մյուսները, նրանք, որոնք պահանջում էին մնալ երկրում, չքել իրենց հայրենիքը, նրանք գտնում էին, որ․

— Ամեն ինչից վախեցող նապաստակն անգամ ապրում է աշխարհի երեսին և մինչև հիմա ոչ միայն բույն չունի, այլև քուն էլ չունի։ Քնում է աչքերը բաց և պպզած։ Իսկ մենք նապաստակներ չենք, մենք մարդիկ ենք և մեր դեմ ելածները նույնպես մարդիկ են։ Մեր տունը պետք է ունենանք, ինքներս պետք է կառուցենք այն, մենք ոչ միայն պետք է քնենք, այլև պետք է խորհենք, հանգստանանք, աճենք ու բազմանանք մեր հարկերի տակ, մեր հողում, մեր ջրին ու մեր սեփական հացին։ Եթե ամեն վախեցնողից փախչենք՝ էլ ինչո՞ւ ենք ապրում այս աշխարհում։ Մենք մեր հողին, մեր ջրին ենք։ Այս մեր երկիրն է։ Մենք ինչո՞ւ պետք է լքենք այն, ինչո՞ւ պետք է մեր երկիրը թողնենք թուրքին։ Ի՞նչն է մեզ ստիպում, Շարիֆ օղլի՞ն։ Ո՞վ է այդ Շարիֆ օղլին, ավազակի մեկը։ Ինչո՞ւ մենք այդ Շարիֆ օղլուն չենք ոչնչացնում, ինչո՞ւ։

— Որովհետև այդպիսիները շատ են,— ձայն տվեց մեկը,— որովհետև այդ Շարիֆ օղլու ետևին կանգնած է մի հսկա երկիր՝ իր հսկա պետականությամբ, որը կոչվում է Թուրքիա։

— Թող կոչվի Թուրքիա, թող կանգնի այդ պետությունը այդ ավազակների ետևում և պաշտպանի դրանց, այդ մեզ չի վերաբերվում։ Մենք ինքներս կպաշտպանենք մեր պատիվն ու մեր ունեցվածքը։ Մենք քիչ չենք. մի հայ քսան թուրքի դեմ կկանգնի։ Մենք պետք է զինվենք և ոչնչացնենք այս ավազակներին, ինչպես ոչնչացնում ենք մորեխներին, երբ նրանք մեր արտերն են լցվում։

— Մինչև ե՞րբ,— ձայն տվեց նույն ընդդիմախոսը։

— Մինչև մորեխները սատկեն, կամ հեռանան։

— Այդ բոլորը հովվերգության ճյուղին կպատկանեն,—

լսվեց մի բարակ ձայն,— մենք չենք կարող ողջ կյանքներս միայն զենքի հետ լինել։ Մենք մաճ պետք է բռնենք, կալ կալսենք, ցորեն աղանք, հաց թխենք։ Մեր երեխաները վարժարան պետք է գնան, եկեղեցի հաճախեն, հանգիստ աճեն ու մեծանան։ Էդ ինչե՞ր եք ասում, բարեկամներ, չէ՞ որ այդ խակական գերություն է։

Ամբողջ օրն այսպես վիճաբանեցին, ամբողջ օրը խոսեցին և մի եզրակացության չեկան։ Այս մասին իմացան կանայք, որոնք ժողովին չէին մասնակցում։

Մեծ Մորոն, նախկին, կամ ինչպես իրենք էին ասում, առաջին Մեծավորի այրին, որի անունը նույնպես Տեր-Կարապետ է եղել, հիմա հանգուցյալ, հավաքում է այնտեղ նստած այրերի կանանց և գալիս ու նրանց հետ ներս է մտնում ժողովատեղին։ Մտնում են ներս, հասկանում են, թե ինչի՞ մասին է վեճը, նկատում են, որ գաղթի կողմնակիցները հաղթում են արդեն, հանում են իրենց գլխների լաչակները, ամեն մեկն իր լաչակը նետում է իր ամուսնու գլխին և ապա հայտարարում.

— Վախկոտ, անպետք հալևորներ, առեք մեր լաչակները, կապեք ձեր գլխներին, փախեք, գնացեք, մի հանգիստ երկիր գտեք և այնտեղ հանգիստ ապրեցեք, մինչև մենք հաղթենք, կոտորենք այս ավազակախմբերին։ Երբ հաղթենք ձեզ հրավեր կուղարկենք, և դուք կգաք ձեր տները ապահով և խաղաղ ապրելու համար։ Մենք կպաշտպանենք մեր հողը և ձեզանից շատ ավելի լավ կկառավարենք երկիրը։ Ով վախկոտ է, թող հեռանա, ով քաջ է, թող մնա։ Այստեղ երկչոտ նապաստակների տեղը չէ։ Մենք գայլերի հետ ենք կռվելու։

Ժողովում քար լռություն տիրեց, կանայք խայտառակեցին և անարգեցին այն տղամարդկանց, որոնք ցանկանում էին գաղթել, փախչելու նման։ Հստակ միտքը և պարզ մոտեցումը իրական դրության նկատմամբ՝ փոխարինվեց ոգևորության և զգացմունքների առատ զեղումների շռայլությամբ։ Այնպիսի մի վիճակ ստեղծվեց, որ ժողովը փակվեց և ամեն ինչ արվեց այնպես, ինչպես ցանկացան խոտորջուրցի կանայք։ Բայց չնայած դրան, մի քանի օր հետո մի յոթ ընտանիք դուրս եկավ Խոտորջուրից և բռնեց գաղթի ճանապարհը։

Նրանք, այնուամենայնիվ, գնացին Ղարսի մարզը և այնտեղ հիմնեցին Ղարախաչ գյուղը։

Խոտորջուրում մնացածները որոշեցին ամուր և վստահելի պաշտպանություն ստեղծել, ոչ միայն զենքի և զինամթերքի ապահովությամբ, այլև հատուկ դրամագլուխ ստեղծել ցանկացած տեղեկություններ գնելու համար, և նույնիսկ, ցանկացած մարդու միջոցով։

Հասարակության տրամադրության տակ դրեցին մեծամեծ ամբարներ, պահեստներ, սրանք մի տեսակ հասարակական, ընդհանրական ունեցվածք էր, որ ոչ ոքի չէր պատկանում, որը կարելի էր շահագործման հանձնել միայն խոտորջուրի ընդհանուր ժողովի որոշմամբ։ Զինապահեստները, գյուղատնտեսական գործիքները, քաշող ուժը (էշեր և ջորիներ) համարվեց հասարակության ունեցվածք։ Ամեն ինչ նախատեսվեց անել այնպես, որպեսզի ավազակախմբերի անսպասելի հարձակումները չկարողանան խոտորջուրցիներին անպատրաստ վիճակում բռնել։ Որոշ գործողությունների համար նշանակվեցին պատասխանատու անձեր, ստեղծվեցին մշտապես գործող մարտական ջոկատներ՝ ամեն վայրկյան պատրաստ դիմադրության։ Յուրաքանչյուր խոտորջուրցի պետք է իմանար, թե որտեղ պետք է գտնվեր տագնապի պահին և ինչպիսի պատրաստությամբ։ Ծերունիները պարտավորեցրին Մեծավորին՝ այս բոլորի հետ միասին նաև դիմել թուրքական բարձր իշխանություններին և խնդրել, որ անհրաժեշտ, անհետաձգելի միջոցներ ձեռնարկեն հայերի ապահովության համար։

Այդ բոլորն արվեց, և երբ արդեն քիչ գործ էր մնում անելու, Մեծավորը սկսեց փնտրել այն վաշտապետին, որն արդեն մեկ անգամ եղել էր Խոտորջուրում և բանտարկել էր Շարիֆ օղլի Հուսեյին բեգին իր ավազակների հետ և հանձնել իշխանության ձեռքը։ Մեծավորը երկար ժամանակ փնտրեց, ցանկանում էր խնդրել նրան, որ նա նորից գա օգնության, բայց նրան ասացին.

— Չկա,— ասացին,— նրան արդեն «բաթմիշ» են արել։

Եվ Մեծավորը սաստիկ վշտացավ և նրա գործը շատ դժվարացավ։ Նա հավաքեց իր ձիավոր հարյուրակը և նրանց

հետ մեկնեց Հունուտ։ Ճանապարհին հարյուրակը կանգ առավ հանգստանալու Թորթումի հայկական Ոապատ գյուղում, Աղալարյան Պետրոսի տանը։ Հենց այստեղ էլ նա հանդիպեց վաշտապետին.

— Ալլահը կամեցավ, որ մենք մեկ էլ հանդիպենք,— ուրախացավ վաշտապետը,— ես պատրաստ եմ օգնելու ձեզ, ես երդվյալ թշնամի եմ ամեն տեսակի ավազակային գործողությունների, ես չեմ կարողանում հանդուրժել ավազակությունն, ինչի համար էլ որ այն կատարվի։ Ես պետական մարդ եմ, թուրք զինվոր։ Ավազակությունը հանցագործություն է և պետք է պատժվի օրենքի ողջ դաժանությամբ։ Ավազակին պետք է կախել։ Շարիֆ բեգը այս էլ որերորդ անգամն է փախչում կախաղանից։ Այս անգամ նա ինձանից էլ չի փախչի, նրա դատաստանն իմ ձեռքով եմ անելու, այս է իմ նախնական պայմանը։

— Բարի,— ասաց Մեծավորը,— այդ բանը դու կանես, ես հոգևորական եմ, ես իրավունք չունեմ մարդ սպանելու, ես չեմ կարող մարդ սպանել, ինձ արգելված է։ Բայց ես էլ ունեմ իմ պայմանը՝ պետք է գործես միայն իմ ծրագրով, իմ խորհուրդներով,— ասաց նա ու ոսկով լի քսակը դրեց սեղանին։

— Համաձայն եմ,— պատասխանեց վաշտապետը, քսակը վերցնելով։

Տանտերը կերակրեց տղաների մի մասին, ճանապարհ դրեց և խնդրեց.

— Ինչ ուզում եք արեք, միայն թե երեխաներ չսպանեք։

Վաշտապետը քթի տակ ծիծաղեց տանտիրոջ միամտության վրա.

— Մենք չենք գնում երեխաներ սպանելու, մենք ավազակներ չենք։

Նրանք ուշ երեկոյան հասան Հունուտ գյուղը։ Վաշտապետը հրամայեց շրջապատել գյուղը։ Երբ շրջապատումը ավարտվեց, նա կանչեց գյուղի մեծերին մեջիթի բակը և Փադիշահի անունից հայտարարեց.

— Պաշտոնապես հայտարարում եմ պաշարողական դրություն Հունուտ գյուղի համար։ Ով փորձի դուրս գալ գյուղից

կգնդակահարվի առանց զգուշացման։ Ով հանդգնի գյուղ մտնել՝ կգնդակահարվի առանց հարցուփորձի։ Ում ձեռքին զենք եղավ՝ կգնդակահարվի անմիջապես։ Եթե որևէ տնից կրակեցին, տունը կայրենք և մոխիրը քամուն կըտանք։ Նա շատ բաներ ասաց, զգուշացրեց և հետո ավելացրեց,— Հենց հիմա, անմիջապես հանձնեք ինձ Շարիֆ օղլի բեգին և նրա տղաներին։

Ծերունիներից երկուսն առաջ եկան, չոյեցին իրենց հինա դրած մորուքները, խոնարհվեցին օրենքի ներկայացուցչի առջև և նրանցից մեկն ասաց.

— Ալլահը վկա է, որ մենք անմիջապես, հենց հիմա կհանձնենք Շարիֆ օղլի Հուսեյին բեգին քո ձեռքը, եթե նա այստեղ լիներ։ Դեռ երեկ իր ընտանիքով, տղաների հետ դուրս եկավ գյուղից և գնաց մեզ անհայտ ուղղությամբ։ Բայց հետո իմացանք, որ գնում է դեպի Լազստան։ Նա իր հետ վերցրեց իր ողջ շարժական գույքը։

Մեծավորը մռայլվեց, նայեց չարությունից կարմրած աչքերով և սկսեց դողալ, ապա դարձավ վաշտապետին ու ասաց.

— Լավ չէ, վաշտապետ, եթե նա հասավ Լազստան, անվրտանգության մեջ կլինի, մենք նրան ձեռք տալ չենք կարողանա։ Բայց նա դեռ տեղ չի հասել, նա դեռ շարժվում է դեպի Լազստան, եթե որևէ տեղ չի նստել հանգստի։ Եթե մենք հենց հիմա շարժվենք նրա ետևից, կեսօրից հետո կըհասնենք նրան։ Եթե այսօր մենք նրան չհասնենք ու չբռնենք՝ վաղն արդեն ուշ կլինի։

— Հենց այս գիշեր, անպայման այս գիշեր, այլապես իզուր են անցնելու մեր բոլոր ջանքերը և նյութական զոհողությունները։ Ես լավ գիտեմ, որ եթե գազազած ավազակապետը անցնի էլ Լազստան, միևնույն է, նա իր մտքից չի հանի վրեժխնդրության ոգին, ավազակության ասպարեզից չի հեռանա՝ ընդհակառակը, նա ավելի լավ հնարավորություններ կունենա, նա կարող է այնտեղից, առանց որևէ արգելքի, փոքրիկ խմբերով հարձակվել մեր օտարության գնացող և օտարությունից վերադարձող խոտորջուրցիների քարավանների վրա և թալանել այնպես, ինչպես կամենում է և այդ համարյա անպատիժ կանցնի։

Մեծավորը երկար մտածելու ժամանակ չուներ։ Նա գտնում է Շարիֆ օղլու ամենահավատարիմ ծառաներից մեկին, կանչառում է նրան, և նա ասում է Շարիֆ օղլու տեղը։

— Ինչո՞ւ այսպես հեշտությամբ գտնվեց Շարիֆ օղլու այս ծառան,— հանկարծ խոսեց խելառ Բագասը,— այդ ինչպե՞ս է, Մեծավոր, որ նա այստեղ է։ Այս թակարդ չէ՞, արդյոք, որ լարել է մեր դեմ Հուսեյին բեգը։

— Այո, Բագաս, դու ճիշտ ես նկատել, այդ կարող է նաև թակարդ լինել, մանավանդ, որ այս մարդը նրա ամենահավատարիմ ծառաներից մեկն է և այսքան հեշտ վաճառվեց։ Ես, անշուշտ, նույնպես այդպես կմտածեի, եթե չիմանայի, թե ինչպիսի հաճույքով են նրա ծառաները աճուրդի հանում իրենց տիրոջը։ Միշտ այդպես է, Բագաս, ոսկու դեմ սրանք կանգնել չեն կարողանում։ Լավ, ինչևէ, հոգնած ենք, վերադառնանք մեր տները մի քիչ հանգստանալու, շտապելու կարիք չունենք։

Մեծավորը գիտեր, որ Շարիֆ օղլու ականջները և աչքերն անպայման գտնվում են մոտակայքում, որ նրանք և լսում են, և տեսնում են, թե ինչով են զբաղված խոտորջուրցիները այս պահին։ Նա բարձրաձայն դիմեց Բագասին և խնդրեց, որ նա ժամ առաջ հասնի Խոտորջուր և լուր տանի, որ գալիս են գիշերելու։ Իհարկե, խելառ Բագասը գնաց, իսկ նրա հեռանալուց քիչ հետո շարժվեց նաև զորամասը դեպի Խոտորջուր։ Բնական է, թուրք լրտեսներն անմիջապես գործի անցան նեկտար տանող մեղուների նման և լուրը կնճիթներին թռան, որ հասնեն Շարիֆ օղլու կացարանը։

Զորամասը դուրս եկավ Հոմուտից։ Հասնելով Ծիճապաղ գյուղի բարձունքում գտնվող Խուլմարի կոչված տեղը, հանկարծ փոխեց ճանապարհը, փոխանակ աջ գնալու և Ծիճապաղ իջնելու, գնաց դեպի ձախ և սրարշավ մտավ Արջմատքոչմատի Ցավուշի սահմանապահ պահականոցը։ Մեծավորը ոսկի դրամներ բաժանեց զինվորներին, նախապես համաձայնեցնելով չերքեզ վաշտապետի հետ և խոստացավ հաջող գործողությունից հետո էլի բաժանել։ Գիշերվա կեսն էր, անթափանց խավարի մեջ անգամ Մեծավորը տեսել էր, թե ինչպես փայլատակեցին վաշտապետի աչքերը, ոսկու գիշերային

փայլից և համբուրելով Մեծավորի ձեռքը, երդվեց չերքեզ օնբաշին.

— Այդ ավազակի գլուխն իմ ձեռքով եմ կտրելու։ Դուք ձեր հաշիվները կմաքրեք նրա հետ, ես՝ իմը։ Թող այլահը վկա լինի, որ ես ուխտավորի պես եկա այս գործին, մոլեռանդ ուխտավորի հավատով։ Ես նրա գլուխը այս պարկի մեջ գցած տանելու եմ Կարին։

Այդ նույն տեղից, որտեղ դադար էր առել զորամասը, մի նեղ, համարյա անտեսանելի կածան էր սկիզբ առնում և օտվերի նման իջնում ձորը։ Մեծավորը, որ քաջ ծանոթ էր այդ տեղերին, դեռ մանկության տարիներից, ցերեկվա նման տեսնում, առաջնորդում էր զորամասը գիշերվա խավարում։ Նա նշան արեց, և զորամասը կանգ առավ Շարիֆ օղլու թաքստոցից քիչ հեռու, աղբյուրի մոտ։

Ավազակապետի թաքստոցը երկհարկանի մի մարագ էր։ Շուրջն այնպիսի փարթամ բուսականություն էր աճել ու բարձրացել, որ մոտիկից անցնողն անգամ, եթե նախօրոք չգիտեր, որ այդտեղ տնակ կա, ոչինչ նկատել չէր կարող։ Բուռն կանաչը ծփում էր բաց դաշտում ծովի ալիքների նման, և թվում էր, թե այնտեղ կանգնած ձին անգամ չէր երևա։ Մատնությունը կատարված էր։

Ժամանած զորախումբը չերքեզ օնբաշու և Մեծավորի գլխավորությամբ շրջապատեց աներևույթ մարագը։ Եվ երբ ավարտվեց շրջապատումը, Մեծավորն ամբողջովին ուշադրություն դարձած կանգնեց մի հաստ ծառաբնի ետևում։ Նա լուռ և համբերությամբ հետևում էր գիշերային ձայներին։ Խաղաղ էր բնությունը, ձայն ու ծպտուն չկար։ Ինչ-որ տեղ հյուսնի համառությամբ, ինչ-որ միջատ սղոցում էր իր փայտը։ Լուսին չկար, քամի չկար, թփերն անգամ անշարժ էին.

«—Չլինի՞ գազանն այս անգամ էլ պրծացրեց իր փոստը»,— մտածեց Մեծավորը։ Մտածեց, բայց համբերությամբ սպասեց մինչև լուսաբաց։ Երբ լուսաբացը գգացող չորանխափուկները ձայն տվեցին իրար՝ մարդու նման մեղմ սուլոցներով, երբ օդը թեթևացավ ու տաքություն զգացվեց, Մեծավորի ականջին խշշոցներ հասան։ Նրան թվաց, թե ինչ-որ բան է անցնում թփերի միջով՝ գազա՞ն է, թե՞ մարդ...

Մեծավորը քարացավ տեղում և հանկարծ նկատեց, որ

եկողը մարդ է և գնում է դեպի այն տեղը, որտեղ գտնվում է մարագը։ Նա զգուշությամբ շոշափեց խելառ Բագասի ուսը, որ պպզած էր նրա ոտքերի մոտ։ Բագասը բարձրացավ մի փոքր և վայրի գազանի զգուշությամբ սողաց դեպի իր զոհը։ Նրա աչքերը վառվում էին կրակի պես, մարմինը սառել էր լարվածությունից։ Մարդն ինչ-որ բան զգալով մի պահ միայն կանգ առավ։ Եվ հենց այդ պահին խելառ Բագասը վագրի նման ցատկեց նրա վրա։ Կարճատև, կայծակնային հրարանցումից հետո ամեն ինչ լռեց ու անշարժացավ։ Մեծավորը չնկատեց անգամ, թե ե՞րբ և ինչպե՞ս Բագասը տապալեց նրան գետին, բերանը կապեց, կապեց նաև ձեռքերն ու ոտքերը և ինքն ընկավ մեջքի վրա շունչ քաշելու համար։ Մեծավորը տեսավ միայն խելառ Բագասի քրտնած դեմքը և թույլ ժպիտը դեղնած դեմքի վրա։ Ժպիտը խաղաց նաև Մեծավորի դեմքին, բայց այն խառնված էր տարակուսանքի և զարմանքի զգացումով։ Նրա առջև ընկած էր ոչխարի նման կապոտված Շարիֆ օղլու այն հավատարիմ ծառան, որը մեկ օր առաջ ծախեցի իր տիրոջը մի քանի ոսկի դրամով և հայտնեց նրա տեղը, իսկ հիմա եկել էր, որպեսզի զգուշացներ և փրկեր իր վաճառված տիրոջը գնորդի ձեռքից, որովհետև դեռ քանի՞ անգամ կարելի էր վաճառել նրան և նույնքան անգամ ազատել նորից վերավաճառելու համար։ Երբ խելառ Բագասը հանգստացավ, քարշ տվեց իր զոհին, աղբյուրի մոտ Մեծավորը հարցաքննեց նրան։ Քիչ հետո ամեն ինչ պարզ էր և հասկանալի։

Գազանն այնտեղ էր, իր որջում, նա սպասում էր իր հարազատ ծառային։ Բայց նրան սպասում էին նաև հայ կրտրիճները։ Երբ արևը դուրս եկավ լեռան ետևից, թռչունները մի պահ լռեցին, փոքրիկ հյուսն անգամ դադարեց սղոցել, մարագի դուռը կամաց ճռնչաց ու բացվեց։ Մի տղամարդ դուրս եկավ այնտեղից կուժը ձեռքին ու կանգնեց մուտքի աստիճանների վրա։ Նա երկար ժամանակ ոչ մի շարժում չէր անում, ուշի-ուշով զննում էր շրջապատը։ Եվ այնքան ժամանակ այդպես կանգնած մնաց, մինչև որ համոզվեց, թե կասկածելի ոչինչ չկա, համոզվեց և նոր միայն իջավ աստիճաններից ու գնաց դեպի աղբյուրը ջրի։ Լավ առավոտը, լեռնային թարմ օդը լցրեցին նրա հոգին հանգստությամբ, և

նա քթի տակ շշնջաց իր սիրած երգը, ու Մեծավորը լսեց այդ երգը։

Շարիֆ օղլին ջուրը լցրել էր կուժը և արդեն ետ էր դառնում։ Քայլում էր ծույլ, անհոգ քայլով և երգում էր մեղմաձայն.

Մեծավորը սպասեց այնքան, որ Շարիֆ օղլին ներս մըտավ։ Մեծավորն ազդանշան տվեց իր տղաներին։ Շարիֆ օղլին մի բաժակ սառը ջուր լցրեց և սկսեց խմել, ջուրը համեղ էր և կազդուրիչ, հաճույքը ստիպել էր նրան աչքերը փակել։ Մեծավորը մերկացրած սուրը ձեռքին կատվի նման ներս մտավ, տեսավ թշնամուն ջուր խմելիս և նրա մտքովը կայծակի պես անցավ իր պապերի խոսքը՝ «Օձն անգամ մարդուն ջուր խմելիս չի խայթում»։ Շարիֆ օղլին, որ ոչինչ չէր նկատել, ջրի բաժակը մի կողմ դրեց և սկսեց հագնվել, հագնվում և երգում էր։ Եվ երբ շրջվեց տեսավ իր առջև մերկացրած սուրը ձեռքին կանգնած Մեծավորին, մի ակնթարթում գազանի նման ցատկեց դեպի պատից կախված իր սուրը, վերցրեց և խոյացավ Մեծավորի վրա, բայց հարվածը վրիպեց։ Մեծավորի սուրը կտրեց նրա գլուխը հենց այն պահին, երբ օնբաշին ներս ընկավ։ Ավազակապետի կտրված գլուխը գլորվեց ու ընկավ օնբաշու ոտքերի տակ։

— Մուրախաս էֆենդի, այս ի՞նչ արեցիր, չէ՞. որ այս գլուխը ես պետք է կտրեի,— բացականչեց նա։

— Էլի դու կտրեցիր, զավակս, դու կտրեցիր,— ասաց Մեծավորը,— բա էլ ո՞վ կտրեց։ Այս գլուխը դու կտրեցիր,— ասաց, քսան ոսկի հանեց ու դրեց օնբաշու բուռը։— Դու հասկացա՞ր, զավակս։ Ես ոչինչ չեմ տեսել։ Այս գլուխը դու ես կտրել։ Ես հոգևորական եմ, այդպիսի բան չէի կարող անել, ես իրավունք չունեմ մարդ սպանել։

— Փառք ալլահին,— ասաց օնբաշին և մարմնից անջատված ավազակապետի գլուխը բարձրացրեց գետնից, մազերից բռնած դուրս եկավ մարագից ու ցույց տվեց իր զինվորներին։ Զինվորներն աղմկեցին ցնծությամբ և իրենց բաժին դրամները ստացան։

Երբ ամեն ինչ արված էր արդեն, ավազակապետի գլուխը մզրախին հագցրեցին, զինվորներն առջևից, խտտրջուրցի

մարտիկները ետևից, բարձրացան Արջմա-Քոշմաթի պահակատեղին և այնտեղ հեծան իրենց ձիերը։

Երբ վերադառնում էին, արդեն առավոտ էր, արդեն խաղաղ օրը բացվել էր Խոտորջուրի լեռների վրա։ Հեռվում ադամանդի պես շողշողում էր անմատչելի Քաջքարի պղնձաձույլ գագաթը, արևը դուրս էր եկել ու հրդեհել նրա գլուխը։ Խոտորջուրն ու Ծորոխի հովիտը մի պահ հանգստացան ավազակային ասպատակություններից, ազատ շունչ քաշեցին, սակայն, մի պա՛հ միայն...

Էրզրումի թուրք առաջնորդները մի նոր ավազակ աշխարհ հանեցին, Խոտորջուր ուղարկեցին ռիզեցի Թուլ օղլի Դուրսուն բեգին, որը ոչնչով չէր զիջում նախորդին, հանցագործություններ մեջ նույնիսկ իր ոճն ուներ, իր սկզբունքը և իր ճաշակը։ Բայց և այնպես, սա շատ բաներով նման չէր առաջինին, սա «վտարված» էր եղել Տրապիզոնի վիլայեթից երկարամյա «գործունեությունից» հետո։ Նա Էրզրում էր վերադարձել Շարիֆ օղլու աջակցությամբ և իր տղաների հետ մտել Ծորոխի հովիտը։ Հիմա նրան հանձնարարվեց. «Պահպանել Խոտորջուրը, ապահովել այնտեղ սահմանված խաղաղությունը և ազատությունը, այնպես անել, որ այսուհետ ոչ մի բողոք կամ տրտունջ չլինի հայ ազգաբնակչության կողմից»։

Եվ նա հաջողությամբ կատարեց իր պարտականությունը։

Մեծավորի կարգադրությամբ տեղեկություններ հավաքեցին այս նոր նշանակված Թուլ օղլու մասին՝ ո՞վ է, ի՞նչ է և ինչպե՞ս պետք է վարվել սրա հետ։ Երբ ձմեռն անցավ, գարնան հետ մեկտեղ նա էլ հայտնվեց Խոտորջուրի սահմանակից Լազիստանի Քեղուտ գյուղում։ Նա իր հետ Քեղուտ էր բերել հինգ հարյուր գլուխ ոչխար, խաղաղ ու անվնաս անասուններ։ Նա խնդրել էր գյուղական իշխանությանը.

— Մինչև աշուն կծախեք այս ոչխարները Խոտորջուրում, կծախեք իմ նշանակած գներով,— գներն, իհարկե, շուկայական գներից անհամեմատ ավելի բարձր էին։— Ես կգամ աշնանը փողերը ստանալու համար։ Նա եկել էր որպես բարեկամ և ամեն վայրկյան ընդգծում էր այդ, միշտ ծիծաղում, ուրախանում և հիանում էր ամեն բանով։ Նրա սև դեմքի վրա փայլատակող սադափե ատամները բաց էին, նա այն-

պես էր բացում բերանը ծիծաղելիս, որ զույգ կարմիր խնձորներով անգամ բաց բերանը փակել չէր լինի։

— Բարով մնաք, լավ մնաք, թանկագին բարեկամներ։ Եղբայրաբար խնդրում եմ ներեք ինձ այսքան մեծ նեղության համար, որ ես պատճառեցի ձեզ։ Խնդրում եմ, սա առաջին և վերջին նեղությունը համարեք։ Ես ձեզ պարտական եմ մնում։

Դժվար էր մերժել Դուրսուն բեգին, դժվար էր նաև կատարել նրա «Այդքան մտերմական, եղբայրական խնդրանքը»։ Այսպիսով, խոտորջուրն ընկնում էր դժվարին կացության մեջ, մերժելու դեպքում նորից կսկսվեին հոգեմաշ և երկարատև կռիվները։ Համաձայնելու դեպքում բեգը կնստեր խոտորջուրցիների վզին և այն ժամանակ նա իր ճանկերը կտարածեր, կխրեր ամեն տեղ և իսկական փորձանք կդառնար ժողովրդի գլխին։

Խոտորջուրի մեծերը որոշեցին դիմել Կարինում ապրող իրենց նշանավոր հայրենակից Օսմանյան պետության ֆինանսական գործերի բարձր պաշտոնյա Գրիգոր էֆենդի Շարանյանին և հայ կաթոլիկների հոգևոր առաջնորդ եպիսկոպոս Մելիքսեթյանին, Պոլսի հայ պատրիարքին։ Դիմեցին և պատասխաններն էլ շուտով ստացան։ Ուր որ դիմել էին, համարյա նույն պատասխանը ստացան.

«— Ի սեր աստծո, զենքի չդիմել»։

Խոտորջուրցիները չցանկանալով ընդունեցին նաև այս պատիժը, բայց սրանով չվերջացավ, փաստորեն սրանով միայն սկսվեց։ Աշնանը նա նորից այցելեց Խոտորջուր, ստացավ իր ուլխարների արժեքը և իր հետ բերեց այսպես ասած «ԲԱՑ» ծխախոտ, այսինքն՝ ակցիզային հարկը չվճարված ծխախոտ, որի պահելն ու գործածելը ամբողջ Թուրքիայում խստորեն արգելված էր, և պատժվում էր օրենքով։ Սպառման առարկաների վրա դրված այդ անուղղակի հարկը հավաքվում էր ռոյժիների միջոցով, որոնք շրջում էին երկրով մեկ և, սովորաբար, հայտնվում էին ծպտյալ և օգտվում մեծ լիազորություններից։ Օրենքի զանցառումները հետապնդվում էին և զանցառուները խստորեն պատժվում։ Խոտորջուրն այդ էլ «հանդուրժեց» և անվանեց այն «վրա ձգած ապրանք»։ Եվ այս բանը կրկնվեց տարիներ շարունակ ու դարձավ օրինականացված կողոպուտ։ «Վրա

ձգված պարանքի» համար շատերը պատժվեցին և շատերն էլ մեծ-մեծ գումարներ վճարեցին, կաշառքներ տվեցին։ Բազմաթիվ տնտեսություններ քայքայվեցին և ամեն տեսակի տըհաճություններ էլ եղան։ Մի խոսքով, վերջ չկար այս և նման արարքներին ու կարծես մի տեսակ համակերպվել ու հաշտվել էին։ Բայց ահա գարնանը դանակը հասավ ոսկորին։ Արևը դեռ չէր ծագել։ Ծիճապաղ տանող կածանի վրա հայտնվեց հայերի սուրհանդակը։ Նա շտապում էր Ծիճապաղ, կարևոր տեղեկություն էր տանում Մեծավոր Տեր-Կարապետին՝ Դուրսուն բեգը խոտորջուրցիներից «խնդրում» էր, որ իրեն Խոտորջուրի ավատական մեծ իշխան հռակեն, ընդունեն իր իշխանությունը և հնազանդվեն հպատակությամբ։

«Աստծո և նրա Մարգարեի օրենքով, ամեն մի երկիր իր թագավորն ունի, ամեն վիլայեթ իր վալին, ամեն համայնք՝ իր իշխանը, ամեն մի ընտանիք իր տան մեծը և ամեն մի մարդ իր խիղճը, որոնք էլ պահում, պաշտպանում են իրենց հպատակ ժողովրդին և ընտանիքներին։ Այդպես է ամբողջ երկրում։ Միայն մեր Խոտորջուրն է աստծու օրենքից դուրս մնացել։ Ես այդ բանը հանդուրժել չեմ կարող, ես պարտավորություններ ունեմ կատարելու հայ ժողովրդի հանդեպ, և ցանկանում եմ կատարել իմ պարտավորությունները օրինականացված ճանապարհով, սիրով և հավատով։ Երբ ես լինեմ ձեր Դերեբե իշխանը, կառավարության առաջ ձեր փոխարեն ես եմ պատասխան տալու։ Ձեր պաշտպանության հոգսը լինելու է իմ վզին, եթե կտրվի՝ իմ վիզն է կտրվելու ձեզ համար։ Ես այդ գիտեմ և մեր ժողովուրդների դարավոր սիրո ու մտերմության պահպանության համար ես պատրաստ եմ ամեն տեսակի զոհողությունների։ Ընտրեցեք ինձ, և դուք երջանիկ ու ապահով կլինեք»։

Նա երկար խոսեց, նույնիսկ արցունքներ թափեց, շատ բան խոստացավ և առանձնապես շեշտեց.

— Պանդխտության բոլոր ճանապարհներն անվտանգ կդարձնեմ խոտորջուրցիների համար։

Այս մեկը կարող էր կաշառել խոտորջուրցիներին, որովհետև դեռ անհիշելի ժամանակներից սովորություն էր դարձել խոտորջուրցիների համար օտարություն գնալը։ Գնում էին երկրի մեծ քաղաքները դրամ վաստակելու։ Խոտորջուր-

ցիների հիմնական զբաղմունքը հացթխությունն էր։ Երբ բավականաչափ դրամ էին կուտակում, մեծամեծ նվերներով տուն էին վերադառնում։ Վերադարձի ճանապարհը միշտ էլ վտանգներով լցված և անապահով էր լինում։ Թալանում էին տարիների վաստակածը, երբեմն էլ, երբ մարդը փորձում էր դիմադրել, չթալանվել, սպանում էին։ Եվ հիմա Դուրսուն բեգը լիակատար ապահովություն էր խոստանում այդ մարդկանց։

Բեգը մի առիթով ասել էր մի մեծ թուրք պաշտոնյայի.

— Ես այդ գիտեմ։ Ես գիտեմ, թե ինչը կարող է գայթակղեցնել հայ խոտորջուրցիներին։ Երկու բան միայն՝ ճանապարհների ապահովությունը և ընտանիքի սրբությունը։ Այդ երկուսն էլ ես ի վիճակի եմ կատարել։ Ճանապարհների ապահովության համար գնացող և վերադարձող քարավանների հետ իմ տղաներին կուղարկեմ։ Այնպես կանեմ, որ ճանապարհի վրա ուրիշ խմբեր չլինեն։ Իսկ ինչ վերաբերում է ընտանիքի սրբությանը՝ այդ արդեն իմ իսկական իրավունքն է, եթե իմ տղաներից մեկն ու մեկը ծուռ աչքով նայի խոտորջուրցի կնոջը՝ աչքը կհանեմ։ Իսկ ես այդ հարցերում ժուժկալ մարդ եմ։

Շատ հնարավոր և անհնարին բաներ խոստացավ Դուրսուն բեգը։ Ոչնչի առաջ կանգ չէր առնում խոտորջուրցիների համաձայնությունը ստանալու համար։ Թեպետև, նա կարող էր չսպասել այդ համաձայնությանը, քանի որ նա արդեն ստացել էր թուրքական կառավարության և թուրքական հոգևորականության համաձայնությունը, և փաստորեն արդեն այն էր, ինչի որ ձգտում էր հիմա, բայց դեռ օրինականացված չէր։ Տարեց խոտորջուրցիները լավ էին հասկանում, որ նրա ետևում կանգնած էին Էրզրումի վիլայեթի թուրք մեծամեծները, հատկապես մոլեռանդ և բութ կրոնավորների, ղադիների, սանրանջների առաջնորդները, որպեսզի մեկընդմիշտ վերջ դնեին «գյավուր» խոտորջուրցիների թեկուզ ենթադրյալ «Ինքնավարությանը»։

Խոտորջուրում մեծ ժողով հավաքվեց, այս ժողովին, ընդունված սովորությանը հակառակ, մասնակցեցին նաև խոտորջուրցի կանայք.

— Մենք չենք թողնի, որ առանց մեզ որոշվի մեր երկրի բախտը,— ասել էին կանայք իրենց ամուսիններին և Մեծա-

վորին։— Դուք գնում եք օտարություն, մեր վզին է մնում երկրի հոգսերն ու կարիքները և ողջ ծանրությունը, եթե մեզանից պահանջում եք լավի կացիններ պահել մեր անկողիններում և պահպանել մեր մաքրությունն ու պատիվը մինչև ձեր վերադարձը, ապա թույլ տվեք նաև, որ մենք կարողանանք պաշտպանել մեզ այնպես, ինչպես մենք ենք կամենում, և ինչպես որ կարող ենք։ Այսուհետ մենք մասնակցելու ենք ձեր մեծ ու փոքր ժողովներին, ձեզ հետ հավասար իրավունքներով։

Եվ այդպես էլ եղավ։ Ժողովը հրավիրվեց «Խավարման գիշերը», զատկի նախօրեին եկեղեցում, որպեսզի ոչ մի կասկած չհարուցվի։ Ռանլվեքից հետո փակ վարագույրի առջև, երկար ու բարակ արարողությունների ընթացքում, երբեմն խոսք էին առնում ժողովականները խստագույն գաղտնապահության պայմաններում.

— Լավ իմացեք, տղամարդիկ, դանակը վաղուց է ոսկորին հասել, հիմա այն արդեն մեր սրտերին է մոտեցել— առաջին ելույթն է ունենում մեծ Մորոն,— հիմա մենք եկել ենք այստեղ իմանալու, թե ի՞նչ եք մտածում դուք, թողնելու եք արդյո՞ք, որ դանակը մեր սիրտը խոթեն, թե՞ հեռացնելու եք մեզանից այդ դանակը։ Եթե կարող եք ասացեք՝ ինչպե՞ս և ի՞նչ եք անելու, որպեսզի մենք էլ մեր անելիքներն իմանանք և օգնենք ձեզ։ Եթե չեք կարող ոչինչ անել, ապա մենք մեր և մեր երեխաների գլխների ճարը տեսնենք։ Մենք չենք ուզում ընկնել թուրքի ճանկը, չենք ուզում մեր երեխաներին գերության հանձնել կամ մահվան։ Պարզ խոսեք, ճշմարիտ խոսեք, մեզ չխաբեք, մեզանից ծածուկ ոչինչ չանեք և ինչ որ անելու եք առանց մեր համաձայնության չանեք։

Այստեղ հարկ է հիշել, որ թեև Խոտորջուրին հարևան բոլոր գյուղերում նույն այդ ժամանակներին գոյություն ունեին ավատական կարգերը, այսինքն՝ բոլոր գյուղերն էլ ունեին իրենց դերեբեյերը, որոնք օժտված էին ֆեոդալի իրավունքներով, բայց Խոտորջուրում երբեք ավատական կարգեր չեն եղել։ Թե ինչի՞ն կարելի է վերագրել այդ և ինչպե՞ս է պահպանվել այդ դժվար պայմաններում Խոտորջուրի «ինքնուրույնությունը»՝ դժվար է պարզ ու որոշակի ասել, բայց այդ կարգերի գոյությունը Խոտորջուրում հաստատող ոչ մի հետք

անգամ չկա ոչ խոտորջուրցիների բարբառում և ոչ էլ նրա բանահյուսության մեջ, որտեղ անպայման պետք է լինեին և պահպանվեին այդ հետքերը, երբեմն նույնիսկ մեծ չափերով, ինչպես տեսնում ենք մենք այլ հանգամանքներում և այլ լեզուներում։

Խոտորջուրցի ծերունիները հավաստիացրել են իրենցից հետո եկող սերունդներին, թե իրենք չեն տեսել և չեն լսել նույնիսկ, որ իրենց պապերը խոսեին բեգերի կամ իշխանների մասին։ Խոտորջուրում բեգեր և իշխաններ չեն եղել։ Խոտորջուրցին թե իր երկրում, թե արտագնաց վայրերում, բացի Թուրքիայից, նաև Վրաստանում, Ղրիմում և Ռուսաստանում, միշտ էլ ազատ է եղել։ Գյուղացի, թե արհեստավոր, խոտորջուրցին միշտ էլ հպարտացել և օգտվել է իր ազատությունից։ Խոտորջուրցին հաց է թխել և թխել է այն բոլորի համար։ Համարյա բոլորն էլ հացագործներ էին, խոսքը տղամարդկանց մասին է, և նրանց թխած հացը ուտում էին նույնիսկ արյունարբու ավազակապետերը, բեգերը, վալիները ու ոչ ոք չէր մտածում այն մասին, թե իրենց զոհերի թխած հացն են ուտում և բկներին չի մնում։ Եվ ահա, եկել բռնել են խոտորջուրցիների կոկորդից և պահանջում են, որ իրենց ԸՆՏՐԵՆ։ Այսպես, շատ քաղաքավարի, նույնիսկ սիրալիր արտահայտություններով, խնդրանքի ու քնքշանքի հասնող «աղերսներով»։ Պահանջում են, որ ստրկությունն ընդունեն իրենց կամքով և ցանկությամբ, ցնծությամբ և ուրախությամբ...

Խավարման գիշեր, աղոթքի գիշեր, զղջումի, ապաշխարելու գիշեր... Փակ վարագույրի առջև մի մեծ մոմ էր վառվում, նրա կողքերին շարված էին իրար հավասար տասներկու մոմեր՝ վեցը ձախ կողմից, վեցն էլ աջ կողմից, դրանք Հիսուսի տասներկու աշակերտներն էին։ Մեծ մոմի ձախ թևում մոմերից մեկը հանգած էր, չէր վառվում, նրա գույնը սև էր, այդ Հուդան էր, նա, ով պետք է մատներ Հիսուսին նրան փնտրող թշնամիների ձեռքը։ Լուռ և մռայլ երեկոն ծանրացել էր հավաքվածների սրտերի վրա և այդ սև, չարագուշակ մոմը՝ զգոնության և աչալրջության էր կանչում այս նեղ մատուռի տակ հավաքված մի բուռ հայերի, որոնք ծանր ու համարձակ վճիռ պետք է կայացնեին այդ պահին, խավարման այդ ապաշխարելու, աղոթքի և զղջումի գիշերը։

— Մերժել բեգին,— ձայն տվեց Մեծ Մորոն։ Նա մոտեցավ սուրբ սեղանին, հանեց Հիսուսի տասներկու աշակերտների շարքից վերջին, ձախ թևում ցցված սև մոմը, նետեց ոտքերի տակ և ասաց,— այսպես է։ Այս է մեր կամքը, մայրեր, քույրեր, խոտորջուրցի կանայք և հարսներ, եթե մեր հալեվորները չեն ուզում, թող բարձրացնեն այս սև մոմը և դնեն իր տեղը, և մենք կթողնենք այս ժողովն ու կգնանք մեր լաչի կացինների մոտ... Մենք պատրաստվում ենք պաշտպանելու մեր, մեր երեխաների ու մեր հալևորների պատիվը։

Սև մոմը մնաց քարե սալահատակին ընկած, ոչ ոք այն իր տեղը չդրեց։ Տրորվեց, քարերին քսվեց սև մոմը։ «Խավարման գիշերն ավարտվեց»։ Մեծավորին հանձնվեց պաշտպանության գործի կազմակերպումը և ժողովուրդը թեթևացած դուրս եկավ։

Խոտորջուրում անհիշելի ժամանակներից գոյություն ունեցող կարգերի համաձայն, կռվի ժամանակ բոլոր տղամարդիկ և երիտասարդությունը հայտարարվում են հավաքի մեջ ինքնաբերաբար։ Նրանք պարտավոր էին երեք օրվա ընթացքում իրենց զենքով ու սննդի պաշարով՝ երեք օրվա պաշարով, կանգնել հրամանատարի ընդհանուր դրոշի տակ։ Ըստ այդ կարգերի հրամանատարը միշտ էլ եղել է Մեծավորը։ Բացի դրանից,պատերազմի կարիքների համար պետք եղած ամեն տեսակի մասնավոր գույքը, ինչպես զենքն ու զինամթերքը,այնպես էլ պարենը, գրաստները, անասունների կերը և այլ անհրաժեշտություններ, անվճար դառնում են հասարակական սեփականություն և դրվում են ընդհանուր հրամանատարի տրամադրության տակ։ Եվ չնայած նրան, որ Հիսուսի տասներկու աշակերտներից մեկին իբրև սև, չվառվող մոմ հանեցին ու դուրս նետեցին խավարման գիշերը, ծերունիները գիտեին, որ հենց նույն այդ ժամին, երբ ժողովն ավարտվեց, Դուրսուն բեգն արդեն կիմանա ժողովի որոշումը և առանց ուշանալու, մինչև լույսը բացվելը կփորձի փոխել այդ որոշումը իր իմացած միջոցներով։

Խոտորջուրցիներն անմիջապես դիմեցին պաշտպանական միջոցների։ Նրանք իրենց տները չգնացին։

Առաջին հերթին պահակախմբեր դրվեցին և փակվեցին կարևոր լեռնանցքները, սուրբ խաչը, Հողմասարերը, Մեծ լեռը,

Կարմիր հովիտը, Զաֆրանափոսը, Ասլանափոսը, Ջիթելկաբաղը, Քոչին սարը, Ջիաբակը, Երենաօղը, Արջմաթ-Քաշմաթը, Գեբերի Վարդանաց-գորավարաց մատուռը։

Ուժեղացվում է նաև Զոր դռան մշտական պահականոցը։ Իհարկե, հատկապես զգուշացնում են հովիվներին։

— Տեսեք, դուք ամբողջ օրը լեռներումն եք։ Գայլերին շները կհսկեն, այդ թողեք նրանց։ Իրքներդ հեռացեք հոտերից։ Լավ նայեք, հենց որ կասկածելի մարդ տեսնեք, կամ կասկածելի շարժում՝ իմաց տվեք և, եթե պետք է՝ զենքի դիմեք։ Ոչ մի լազուտչիկ չպետք է անցնի ձեզանից,— խրատում է հովիվներին Մեծավորը։— Դուք հիմա արդեն միայն հովիվներ չեք, դուք հիմա զինվորներ եք։ Դուք հիմա ոչխար չեք արածեցնում, այլ ձեր երկրի սահմաններն եք պահպանում։ Մենք ձեզանից այդ ենք պահանջում, և ձեր ամեն մի սխալը խստությամբ կգնահատվի որպես վատ արարք։ Մի բան էլ լավ իմացեք, որ թշնամին և նրա լազուտչիկները, երբ լեռներում ոչխարներ տեսնեն, կզգուշանան, չեն մոտենա, որպեսզի չհայտնաբերվեն, ուրեմն, դուք պետք է հեռու լինեք ոչխարներից։

Ձեզ մանրամասն կպատմեն, կասեն ձեր անելիքների մասին։ Տուն չգնաք, քիչ հետո ոչխարները պետք է հանեն տներից, դուք լեռները գնացեք։ Թշնամին հենց հիմա կարող է գործել։

Լուսաբացին կազմվում է ինքնապաշտպանության մանրամասն մի ծրագիր, բաշխվում են պարտականությունները, դասավորվում մարտական ուժերը։ Ամենուրեք ոտքի են հանվում նաև հետախույզները, որպեսզի որքան կարելի է շուտ և ճշգրիտ իմանան, տեղեկանան Դուրսուն բեգի գործունեության ու ծրագրին։ Գտնվում են նաև թուրք վաճառող գործիչներ, արծաթասեր մատնիչներ, հողաներ՝ իրենց տերերին վաճառելու պատրաստակամությամբ։ Խոտորջուրը զենք ուներ և զինվում էր արդեն։ Մեծավորը լուր ուղարկեց օտարության մեջ գտնվող խոտորջուրցիներին, թե ինչո՞վ են գրաղված երկրում և ի՞նչ են անելու։ Նրանց հասցեագրված նամակները Մեծավորն ուղարկեց շատ շտապ իր հավատարիմ, փորձված սուրհանդակ Յաուզի հետ, որը Բերդագրակ—Արդահան—Ախալքալակի—Մանգլիս գծով հինգ օրվա ընթացքում նամակը հասցնում էր Թիֆլիս՝ հացագործների ուստաբաշուն։

Ժողովից հետո արդեն անցել էր երկու օր, Խոտորջուրը պատրաստ էր դիմադրության։ Ոչ մի տեղից ոչ մի լուր չբերեցին, ոչ հովիվները, ոչ էլ լազութչիկները։ Խաղաղ ու հանգիստ էր աշխարհը, կարծես երբեք և ոչինչ տեղի չէր ունեցել այդ օրերին։ Թվում էր, թե Դուրսուն բեգը չքվել, կորել է աշխարհի երեսից։ Դուրսուն բեգը հիմար մարդկանցից չէր և ոչ էլ դյուրագրգիռ և անզուսպ։ Նա շատ լավ գիտեր, որ իրեն կսպասեն.

— Թող սպասեն։ Թակարդը լարողները միշտ էլ անհանգիստ են լինում, թակարդն ընկնողին շտապելու հարկ չկա։ Թող ժանգոտեն լարված թակարդները,— ասել էր նա իր անհանգիստ օգնականներից մեկին,— և թող լարեն իրենց բոլոր ունեցած թակարդները ու դնեն ճանապարհների վրա։ Մենք այդ ճանապարհներով չենք գնա, մենք առհասարակ չենք գնա...

Հետատես մարդ էր Դուրսուն բեգը, քաջ, համարձակ և զարմանալի հրաձիգ՝ ծիծեռնակին խփում էր թռիչքի պահին։ Անձնական կյանքում հայտնի էր իր ժուժկալությամբ, մաքրակենցաղ էր, Շարիֆ օղլու ճիշտ հակապատկերը։ Նրա միակ պակասությունը, որ գիտեին հայ մեծերն ու ինքը՝ Մեծավորը; այդ նրա անսահման փողասիրությունն էր, իսկ նրա վրտանգավորությունը նրա խորամանկության, նենգության և համառության մեջ էր։ Այսպես լավ էին ճանաչում այն մարդուն, որը բռնել էր արդեն Շարիֆ օղլու տեղը և պատրաստվում էր տզրուկի պես կպչել Խոտորջուրի մարմնից։ Նա աշխատում էր չվախեցնել, չզայրացնել իր զոհին։ Նա սպասում էր, որ իր զոհը զոհվելուց առաջ պետք է հանգիստ լինի, այդ էր պահանջում «մուսուլմանական մարդասիրությունը»։

— Սոված գազանն անզգույշ է լինում, սոված գազանը հարձակվում է անզուսպ կատաղությամբ։ Մեր գազանը սոված չէ, նա չի նետվի որսի վրա անհամբերությամբ։ Նա պետք է խորամանկի, նա դեռ կփորձի իր ուժերը և կաշխատի հասկանալ, թե ում հետ է գործ ունենալու։— Այս կարծիքին էին խոտորջուրցի կանայք և իրենց կարծիքը հայտնեցին Մեծավորին։

Կարծես ամեն ինչ նախատեսված և ապահովված էր արդեն։ Մեծավորն ու իր խորհրդատուները ոչինչ այլես չէին

անտեսել, մնում էր միայն խստությամբ հետևել ծրագրերի իրագործմանը և պաշտպանությունը ապահովված կլիներ։ Բայց ինչպես ժողովուրդն է ասում՝ ուրբաթը շաբաթից շուտ եկավ։

Մի գեղեցիկ օր Դուրսուն բեգը հայտնվեց Խոտորջուրի դեմ դիմաց, Ճորոխի աջափնյա Կարմիրք գյուղի սահմաններում։ Եվ շատ կարճ ժամանակում Կարմիրք, Ճետկունց և Կոտրաշեն հայկական գյուղերի հետ առանձին-առանձին բանակցություններ վարելուց հետո, նրան հաջողվում է այդ գյուղերին ընդունել տալ իր իշխանությունը։ Նա պատանդներ է վերցնում այդ գյուղերից և անցնում է Ճորոխի ձախ ափն ու բարձրանում Մոխրակույտ գյուղը։ Այստեղ էլ, վերին ու ներքին Մոխրակույտերի, Նորանանց և Գորգանց թաղերում նույնպիսի հաջողություն ձեռք բերելուց հետո, Դուրսուն բեգըն արդեն պատրաստություններ է տեսնում հարձակվելու բուն Խոտորջուրի վրա։

Խոտորջուրում ամեն ինչ ժամանակին իմացան և լրջորեն անհանգստացան։ Կյանքի և մահվան հարցեր էին այս հարցերը։

Խոտորջուրի կանայք պահանջեցին, որ իրենց տղամարդիկ նախահարձակ լինեն, չսպասեն թշնամու հարձակմանը, անմիջապես չդիմեն պաշտպանության։

— Պաշտպանությունը պաշտպանություն է,— ասում էին նրանք,— ինչ էլ որ լինի ենթարկվելու ենք հարձակման։ Գնդակներն ու արկերը մեր տների վրա են թափվելու, մեր բակերն ու տներն են ընկնելու, եթե ետ էլ մղենք թշնամուն, միևնույն է, նրանք մեզ որոշակի վնասներ պատճառած կլինեն արդեն։ Մեր տները կքանդեն, մեր անասուններին կըսպանեն, կհրդեհեն։ Ինչո՞ւ թույլ տանք, որ այդ բոլորը մեր փողոցներում, մեր բակերում տեղի ունենան։ Իքներդ հարձակվեք և նախաձեռնությունը ձեր ձեռքն առեք։ Մենք չենք ցանկանում, որ մեր բակերում ռումբեր պայթեն։ Գնացեք և ինքներդ խփեք նրանց, թող նրանց բակերում մեր ռումբերը պայթեն։

Տղամարդիկ, իհարկե, լսում են կանանց ասածները, բայց և թերահավատությամբ ձգձգում են, զանազան պատճառներ բռնում, ենթադրություններ անում և սպասում, որ հարցերը

լուծեն զինվորականները, իրավաբաններն ու քաղաքագետները։ Մի խոսքով, խոտորջուրն արդեն ստեղծել էր իր պաշտպանության գոտիները։ Ամեն տեղ աչքեր ու ականջներ կային, զինված մարտիկներ, արդեն մարտի նետվելու ազդանշանին սպասողներ։ Եվ այդ բոլորը միայն նրա համար, որպեսզի պաշտպանվեն ավազակախմբերից և ոչ թե իրենց վրա եկող բանակներից։ Իսկ տների՞մ, տներում ուրիշ մըտքեր էին ծնվում.

— Ի՞նչ եք սպասում, ինչի՞ եք սպասում։ Սպասում եք, որ Թուրքը գա մեր դուռը թակի, նոր միայն ձեռքներդ պարզեք հրացան վերցնելու։ Զարմանալի մարդիկ եք,— գրոհում և անիծում էին կանայք տղամարդկանց։

— Կարծում եք, որ կամքի տեր, հեղինակավոր և իմաստուն մեկ-երկու հոգի կարող են փրկել Թուրքիան այս կործանումից։

— Է՜,— հակառակում էր նրան մեկ ուրիշը,— ինչե՞ր անցան ու գնացին ժամանակի հետ և դեռ ինչեր պետք է անցնեն ու գնան։ Պատմություն է՝ կընթանա, և ամեն մի օրն իր հետ մի բան կտանի այս աշխարհից։ Մեզանից հետո եկողները, երբ կարդան կամ լսեն մեր մասին, կհարցնեն իրար. «Տեսնես էս մարդիկ ի՞նչ եղան»։

— Է, ի՞նչ եղան, բոլորս էլ գիտենք՝ հող դարձան։ Կգտնեն այս հողի մեջ մի քանի ցիրուցան գերեզմաններ և դրանցով կհաշվեն, թե քանի՞ մարդ է զոհվել։

Ոմանք էլ խոսում էին այնպիսի հարցերի մասին, որոնց մասին խոսելու կարիք էլ չկար՝ «Ամերիկայի պետական մեքենան անկրոն և անցեղ է» կամ «Պաշտոնական Ամերիկան մեր երկրի մեջ Հայաստան մը ստեղծելու հակում չունի»։

Կամ, նույնիսկ այսպիսի մտքեր՝ «Սուլթան Մուրադն արդեն 1635 թվականին մեծ զորքով արշավեց պարսիկների վրա, նրանց ձեռքից Բաղդադը խլելու համար, բայց չկարողացավ խլել, նա բավարար համարեց միայն Երևանն ու Դավրիժը վերցնել ու ետ դարձավ»։

— Կնիկ, վեր երթանք, մեր ժամը մոտեցել է։

Եվ նրանք գնացին պարտեզի վերջը իրենց վրա դրված հսկողությունն իրականացնելու համար։

— Այս բեգը,— համոզում էր կինն ամուսնուն,— մեկ

ղուռուշի առնված ապրանքը ստիպողաբար երկու հարյուր ղուռուշով հայերին կվաճառե։

— Անպետք հալևորներ,— հանդիմանում էին կանայք իրենց ամուսիններին։

Խոտորջուրում ամեն ինչ մտածված էր, ամեն բան իր տեղն ուներ։ Քաջասիրտ Մեծավորը օր ու գիշեր ոտքի վրա էր, ամեն տեղ հասնում, ամեն ինչ ստուգում և վերստուգում էր, ոչինչ կասկածելի և թերավարտ չէր թողնում։ Քաջալերում, ոգևորում էր մարտիկներին, բնակիչներին, հրամանատարներին, իսկ կանանց խնդրում էր, որ ուշադիր լինեն տան ու տեղի, երեխաների ու ծերունիների նկատմամբ։

Այդ նույն ժամանակամիջոցում Դուրսուն բեգի ռազմական ճամբարում, էժան ու հեշտ հաջողություններից հետո, ոգևորության ու շահավետության զգացումները մղում էին մարդկանց ավելին անելու, շատին տիրանալու ագահության, և մոռացնել էին տալիս զինվորական կարգապահության տարրական կանոնները։ Շարքային ավազակներն արդեն բողոքում էին, որ ավարները բաժանելիս իրենց քիչ են տալիս, որ հրամանատարներն իրենց համար ավելի շատ են վերցնում և ամենաթանկագին բաներն են վերցնում, որ այդ արդարացի չէ, որ իրենք են հիմնական գործող ուժերը։ Իրենք են ամեն ինչ անում և իրենք էլ պետք է բաժանեն ավարը։ Սկսել էին ինքնակամ հեռանալ ճամբարից, հեռանում էին, երբ կամենում էին և որքան ժամանակով որ կամենում էին։ Խմբերով գնում էին ներքին Մոխրակույտ խմելու, կամ ավելի հեռու էին գնում։ Խմած մարդիկ, հարբած, մնում էին մառաններում, այգիների հնձաններում, և բնական է նրանցից շատերն այլևս ճամբար չէին վերադառնում, նույնիսկ նրանց դիակները գտնել չէր լինում։ Ոմանք էլ իրենց հրամանատարների, ինչպես նաև մաքրակրոն մահմեդական հավատացյալների հետ վեճի էին բռնվում, ծեծկռտվում, թշնամանում և պատեհ առիթը ձեռքից բաց չէին թողնում մեկը մյուսին դաշունահարելու։ Այդ օրերին Թղթախաղն անարգել մուտք գործեց ճամբար, ավազակները տանում, տարվում էին, մոլուցքի մեջ ոչինչ չէին հասկանում, հետևանքը՝ սպանություններ, կողոպուտներ, փախուստ և, իհարկե, քայքայում։ Նման ավազակախմբերը, որոնց երբեմն բանակներ, կամ զորամասեր էին

անվանուա, ըստոմակ չէին ոչ մի զինվորական լուրջ գործողության և բնական էր, որ պետք է զբաղվեին թալանով, առևանգումներով, ավազակությամբ, ինչի որ ընդունակ էին լիովին։

Դուրսուն բեգը հանկարծ զգաց, որ ստիպված է դաժան միջոցների դիմել։ Հրամայեց գնդակահարել երեք զինվորների՝ առևանգության համար։ Գնդակահարեցին։ Նույն օրը մի խումբ զինվորներ ավելի վատ բաներ արեցին։ Եվ հաջորդ օրը գնդակահարեց նաև այդ խումբը։ Ստեղծեց իր մոտիկ մարդկանցից հատուկ դատարան և իրավունք տվեց նրանց գործել ազատ ու անարգել։ Այդ անպաշտոն դատարանը ոչ ոքի չէր խնայում։ Դաժանացավ Դուրսուն բեգն այնքան, որ այլևս չէր հասկանում, թե ինչ էր անում։ Նա ինքը դարձավ անողոք մի դատավոր և որքան խիստ էր դատում, այնքան ավելի էր մեծանում դժգոհությունը նրա դեմ։ Մի խոսքով, վիճակն այնպիսին էր արդեն, որ եթե դրանց հետ մարտի դուրս գար հայերի դեմ, նշանակում էր պարտված լինել դեռ մարտի բռնվելուց շատ առաջ։ Եվ Դուրսուն բեգն իր մռայլ մտքերը հայտնում է իր օգնական, հայրենակից Մամուշ Ջադեին.

— Պետք է ցրել սրանց, մի մասին ոչնչացնել, մյուս մասին ցրել։ Պետք է նոր մարդկանց հրավիրել,— Մամուշ Ջադեն տեսնելով իր պետի հուսալքությունը, փորձում է նրան վստահություն ներշնչել.

— Մեր խումբը վատը չէ, երկաթի պես ամուր և հավատարիմ տղաներ ունենք, ես համոզված եմ, որ այդպես ամուր էլ կմնան, իսկ երբ պատերազմի շեփորը փչի, նրանք ամեն ինչ մոռացած, վագրերի նման կռվի կնետվեն։

— Երկաթին հաղթող պողպատը կա, սիրելի Աբդուլ,— պատասխանում է բեգը,— պողպատի պես ամուր են այդ մարդիկ։ Շարիֆ օղլին չէր ուզում ընդունել այդ բանը, դրա համար էլ վիզը կտրեց։ Այստեղ ենթադրաբար գործել չի կարելի։ Մենք պարտավոր ենք ճիշտ գնահատել մեր դրությունը։ Մենք երեխաներ չենք և ոչ էլ սանձարձակ, կրքոտ խաղամոլներ։ Ոգևորությունը մշտապես ուղեկցում է հիմարությունը և հանդես է գալիս այն պահին, երբ ոգևորությունն

անցնում է սահմանը և կորցնում է չափի զգացումը. հիմարությունն անմիջապես տեսնում է իր գործը։

Դժվարին կացության մեջ ընկած Դուրսուն բեգը ստիպված է հրաժարվել հետագա գործունեությունից, կամ մի խելացի և ապահով ելք փնտրել։ Իհարկե, հրաժարվել չէր կարող, նա արդեն զգում էր իր թիկունքին դեմ արած դաշույնի սառնությունը և ինքն էլ սրտանց չէր ցանկանում հրաժարվել։ Տարիների սովորությունը բնավորություն էր դարձել նրա համար և օրենքն էլ օգնական։ Նա զգաց, որ իր համար աննկատելիորեն, կապվել էր զանազան անքակտելի կապերով և այդ կապերի մեջ խճճել շատերին։ Եթե նա հիմա հեռանար, իր հետ քարշ էր տալու շատերին, իսկ այդ շատերի համար քարշ գալը մահ կլինի, և ահա նրանք էլ մերկացրած սրերի նման հետևում են իրեն այնտեղ, որտեղ պետք կլինի, կկտրեն հանգույցը։ Նա երկար մտածեց և որոշեց դիմել իր հարևան բեգերին, բացատրել նրանց և նրանց օժանդակությունը խնդրել փոխադարձ նպաստավոր պայմաններով։

Նա գնաց բեգերի մոտ, խոստացավ ինչ-որ պետք էր խոստանալ, համոզեց, որ միացյալ ուժերով կարելի է հպատակեցնել խոտորջուրցիներին, որ այդ շատ անհրաժեշտ է, որ մեծ հեռանկարների և լավ գործունեության հետ կապված է այդ բոլորը, որ վերջապես, կիրականացվի Օսմանական մեծ պետության ծրագրերի մի զգալի մասը։ Պետք է ոչնչացնել հայերին, իսպառ ոչնչացնել։ Ոչ մի հայ չպետք է մնա երկրում, այդ պետք է անել համառ հետևողականությամբ, օգտագործելով բոլոր հնարավոր միջոցները։ Այսպես են ասում մեզ մեր մեծերը։

Բեգերը լսեցին նրան և հրաժարվեցին մասնակից լինել նրա գործերին։ Չհակառակվեցին նրան, իրենց հրաժարականները ոչնչով չարդարացրին։ Հուսահատության եզրին հասած Դուրսուն բեգը էմիսարներ ուղարկեց Ղումլեթ, Հունկամեք, Քարկամուրջ և Իծաձոր մահմեդական գյուղերը նոր մարդիկ հավաքագրելու և խումբն ուժեղացնելու համար։ Բայց սրանք էլ հրաժարվեցին.

— Մենք դրա կարիքը չենք զգում,— ասացին։

Բեգի լրտեսները աննպաստ լուրեր տարան Խոտորջուրից. նրանք պատմեցին բեգին այն բոլոր պատրաստու-

թյունների մասին, որոնք արդեն կատարված էին Խոտորջուրում։ Բեգը պարզ տեսնում էր, որ հաղթելու ոչ մի հնարավորություն չունի, որ իր հարձակումը արևի հենց առաջին ջերմությունից օճառի պղպջակի պես կարող է պայթել։ Նա արդեն սկսեց մտածել այն մասին, որ ամեն ինչ պետք է հետաձգել, սուս ու փուս քաշվել հրապարակից, գնալ Լազիստան, այնտեղ վերակազմավորել խումբը, լրացնել այն ուժեղ և վստահելի տղաներով և նոր միայն մտածել լուրջ գործողությունների մասին։ Բայց ցավը նրանումն էր, որ Դուրսուն բեգը նման որոշում կայացնել չէր կարող։ Այդ դեմ էր նրա ոգուն, բնավորությանը։ Շատ անգամ էր նա ծուղակների մեջ ընկնել, շատ անգամներ էր գտնվել անելանելի թվացող վիճակների մեջ, և միշտ էլ ելք էր գտել, դուրս էր եկել այդ դրությունից։ Դուրսուն բեգն այն մարդկանցից չէր, որ հեշտությամբ ձեռքի տար.

— Իմ տարերքը մակընթացությունն է և ոչ տեղատվությունը։ Ես ծնվել եմ արևածագին և ոչ մայրամուտին։ Իմ երգը բարձրագոչ է, հաղթական, իմ բազուկն ուժեղ է, ձայնըս առնական։ Լավ է մեռնեմ, քան հանձնվեմ այդ թույլ մրտքերին։ Եվ նա նստեց իրենից ոչ պակաս համառ և քաջասիրտ իր օգնական Մամուշ Զադեի հետ։ Երկար ու բարակ ամեն ինչ քննելուց հետո այս երկու ավազակները հանգեցին նույն եզրակացությանը՝ «Շարիֆ օղլին ճիշտ էր անում, պետք է գործել նրա նման, օգտվել նրա գործադրած միջոցներից։ Պետք է հրաժարվել բաց ճակատամարտերից։ Խորամանկությունն ուժեղ զենք է։ ՊԵՏՔ է ծածուկ ներս սողոսկել հայ Մեծավորի տունը։ Տունը հայի համար անառիկ ամրոց է, առար՝ մեջքը կկոտրվի։ Պետք է գերել նրա հարազատներին, պատանդ վերցնել և դրանից հետո միայն բանակցությունների հրավիրել նրան և հետը բանակցությունների նստել»։

— Հարկավոր է աքցանով բռնել Խոտորջուրի կոկորդից և այնպես սեղմել, որ շնչել չկարողանա և նոր միայն հարցնել շնչահեղձ լինողին՝ «Համաձա՞յն ես, թե ոչ, որ ես քո իշխանը լինեմ»։ Եվ նա կհամաձայնվի, ուրիշ ելք չի ունենա, այս է ճշմարիտ և իրական ուղին։

Մամուշ Զադեն ուշադրությամբ լսեց Դուրսուն բեգին և ասաց.

— Մենք գնում ենք մերկ ձեռքերով առյուծի բերանից ատամը քաշելու։

— Մեր հաջողությունը պետք է լինի մեր արագության մեջ, եթե կարողանանք արագ գործել՝ կհաղթենք,— նա ձեռքը տարավ ծոցը և երկար ժամանակով փորձում էր ինչ-որ բան հանել այնտեղից,— իսկ ինչո՞ւ չպետք է կարողանանք արագ գործել, մի՞թե այդ մեր ձեռքին չէ,— նա դուրս քաշեց մի թերթ և դրեց սեղանին,— արագությամբ տեղ հասնել և և կարկտի նման տեղալ նրանց գլխին, և ոչ մի խղճմտանք մեզ չպետք է խանգարի,— նա ուղղում է ճմռթված թերթը։

— Ոչ, ոչ։ Այդ վտանգավոր է,— ասաց Մամուշ Ջադեն,— մենք այնքան շատ չենք, որ կարկտի պես տեղանք նրանց գլխին և ոչ էլ այնքան հզոր, որ կարողանանք տիրանալ նրանց լեռներին։

Եվ այդ պահին նորից ցցվեց նրանց առջև Շարիֆ օղլու ողբերգական կերպարը, և նրանք որոշեցին.

— Պետք է խաբել խոտորջուրցիներին, իսկ խաբելու համար պետք է լայն բերանով և ամբողջ հոգով ծիծաղել։ Պետք է այնպես խոսել նրանց հետ, որ նրանք կարողանան տեսնել մեր բաց սիրտը, մեր անկեղծ արյունը և որն ամենից կարևորն է, մենք ինքներս նախևառաջ պետք է հավատանք մեր ասածներին։ Նրանց հետ խոսելիս մեր սրտում ոչ մի կասկած ու կեղծիք չպետք է լինի։ Մենք համոզված պետք է լինենք, որ ճիշտ ենք ասում և այն ժամանակ միայն նրանք մեզ կհավատան, որովհետև մենք ինքներս կհավատանք մեր ասածներին,— նա ուղղած թերթը մեկնեց Մամուշ Ջադեին։— Առ, կարդա, դոկտոր Նազիմի խոսքերն են։

«Պետք է գործել արագ և վճռական,— ասում էր Նազիմը Թալեաթին,— հայերը վտանգավոր են... Հարկավոր է գործել և գործել արագ։ Եթե բավարարվեցինք միայն մասնակի կոտորածով, ինչպես տեղի է ունեցել 1909 թվականին Ադանայում և ուրիշ շրջաններում, ապա այդ օգուտի փոխարեն վնաս կբերի, քանի որ ռիսկ կանենք արթնացնել նաև այլ էլեմենտների՝ արաբներին ու քրդերին, որոնց նույնպես պատրաստվում ենք վլել ճանապարհից. վտանգը կմեծանա եռակի չափով և կդժվարանա մեր մտադրության իրագործումը։ Ես ձեզ մի քանի անգամ ասել եմ այս ժողովում և այժմ

էլ կրկնում եմ, եթե մաքրումն համընդհանուր և վերջնական չլինի, ապա օգուտի փոխարեն վնասն անխուսափելի է։ Հայ ժողովրդին պետք է հիմքից ոչնչացնել՝ այնպես, որ ոչ մի հայ մեր հողի վրա չմնա և անունն իսկ մոռացվի։ Այժմ պատերազմ է, այսպիսի հարմար ժամանակ այլևս չի լինելու։ Մեծ տերությունների միջամտությունը և համաշխարհային մամուլի աղմկալից բողոքները աննկատ կմնան, իսկ եթե հայտնի դառնան, ապա նրանք կկանգնեն արդեն կատարված փաստի առաջ, և դրանով էլ արդեն հարցը կսպառվի։ Այս անգամ մեր գործունեությունը պետք է ստանա հայերի համընդհանուր բնաջնջման բնույթ. անհրաժեշտ է բնաջնջել բոլորին, մինչև վերջինը»։

Մամուշ Ջադեն դեմքը կնճռեց։ Նոր վառած գլանակը ձեռքերի մեջ հանգցրեց ու մի կողմ նետեց։ Դուրսուն բեգը նկատեց այդ, շտապով ծալեց թերթը և նորից ծոցը խոթեց.

— Մամուշ Ջադե,— շշնջաց նա զգալի մեղմությամբ,— եկեք հայերի մոտ ուղարկենք ձեր հարազատ եղբորը՝ Սուլթանին, թող նա գլխավորի մեր պատգամավորությունը։ Սուլթանը մեղմ ու գթասիրտ մարդ է։ Թող նա Ճիճապաղ գնա, թող իր հետ տանի կարմիրքցի պատանդներին, թող ներկայանա Մեծավորին, մեզանից բարևներ հաղորդի և հայտնի, որ ինքը՝ Դուրսուն բեգը, երբեք չի մոռանում այն անթիվ բարերարությունները, որ արել են խոտորջուրցիները։ Նա չի ուզում զենքի դիմել, չի ցանկանում թափել իր հին, լավ բարեկամների արյունը. ուստի՝ խնդրում, աղաչում է Մեծավորին բանակցություններ սկսել վեճը խաղաղությամբ լուծելու համար։ Հենց որ Սուլթանի պատգամավորությունը մեկնի, ես այդ պահին դուրս կգամ իմ մարդկանցով վերին Մոխրակույտից և կշարժվեմ դեպի Ներքին Մոխրակույտ՝ իբր այդ գիշեր այնտեղ գիշերելու համար։

Ամենակարևորն այն է այս գործում, որ այդ մասին ոչ ոք չպետք է իմանա, եթե հնարավոր լիներ ես և դու էլ չպետք է իմանայինք։

Կես ժամ հետո այս խիստ գաղտնի զրույցը վաճառվեց հենց իրեն՝ Խոտորջուրի Մեծավորին։ Ամեն ինչ այս երկրում բարեխղճորեն գնվում է և վաճառվում։ Այստեղ ամեն ինչ իր գինն ունի, իր արժեքը։

— Այս որոշման իրագործումը,— ասաց Մեծավորը իր ծերերին,— հանձնարարվել է հանցագործներից ու ավազակներից բաղկացած հատուկ խմբերի. իսկ նրանց ղեկավարությունը՝ «Գործող եռյակին». դոկտոր Նազիմին, դոկտոր Բեհաեդդին Շաքիրին և լուսավորության նախարար Շյուքրիին։ Ինչպես տեսնում եք, այս դատավճիռը կայացված է մեղապարտի համար։ Այդ մեղապարտը մենք ենք։

Երբ Սուլթանի պատվիրակությունը մեկնեց, հենց այդ պահին Դուրսուն բեգը իր ընտրած խմբով դուրս եկավ վերին Մոխրակույտից և ուղղությունը վերցրեց դեպի ներքին Մոխրակույտ։ Կես ճանապարհին, ինչպես պայմանավորվել էին, խմբից անջատվեց մի փոքրիկ ջոկատ, բեգի ամենահավատարիմ մարդկանցից կազմված և թեքվեց դեպի աջ՝ Գորդանց և Նորանց թաղերը շրջանցելով և քիչ հետո ջոկատն արդեն սրարշավ բարձրանում էր Երևանողը՝ Խոտորջուր մտնելու համար։ Դուրսուն բեգն ամեն ինչ արեց, որպեսզի աննկատ անցնի ամեն տեղով և աննկատ էլ հասնի Միջնթաղ, Մեծավորի հայրենի գյուղը։ Նա ցանկանում էր ծպտյալ մտնել Մեծավոր Տեր-Կարապետ երկրորդի տունը, գերել նրա ընտանիքը, հարազատներին և նոր միայն սկսել բանակցությունները իր դերեբեյության համար։ Իհարկե, բեգը գիտեր, որ Մեծավորը գտնվում է Ծիճապաղում։

Դուրսուն բեգը Երևանողն անցավ, Հինագրակ և Հերկեր ամառային ագարակների արանքով, հասավ Կրման և Ծիճապաղ գյուղերի սահմաններին, որտեղ և անցավ գետը, հանդիպակաց Պալչա թաղի թիկունքում շրջվեց դեպի Ճմփչու և Խաչքար արտերի ու պարտեզների կողմը և այդտեղ, խիտ ծառերի միջով իջավ մեծ գետը։ Կիսակի բերդի ավերակների և Ղորոնի Կաժն անցնելով իջավ Միջնթաղի անչրդի կոչվող արտերը։ Այդ արտերը գյուղի տներից հեռու կլինեն մոտ երկու հարյուր մետր։ Նրա անցած ուղին Երևանողից մինչև Միջնթաղ ուղիղ գծով մոտ յոթ-ութ կիլոմետր կլիներ և այդ տարածությունն անցավ չորս ժամում։ Շատ ծանր էր այդ ճանապարհը։ Խոտորջուրցիները զարմանքով էին խոսում այդ մասին։

— Սատանաներն անգամ չեն համարձակվում անցնել այդ տեղերով, այդ ինչպե՞ս են անցել դրանք։— Եվ, իսկա-

պես, նրանց անցման գծի վրա կածաններ անգամ չկային։
«—Վայրի, անանցանելի տեղեր, քարեր, ձորեր, անդրնդախոր կիրճեր, հեղեղատներ, ուղղահայաց ժայռեր, դահավեժ ջրվեժներ, այդ ինչպե՞ս են անցել։ Գուցե հայերից մեկնումեկը առաջնորդել է նրանց, կամ սատանաները նրանց ձիերի ոտքերին թաղիքներ են կապել, որ մենք նրանց ոտնաձայները չլսենք, կամ մեջքներին առած, շալակով են վեր հանել։ Ի՞նչ իմանաս։ Այդ ինչպե՞ս է եղել։ Դուրսուն բեգն ինչպե՞ս է բարձրացել այդ ուղղահայաց պատերով վեր»,— գրում են թերթերը։

Այո, այդ գիշեր բարձրացան նրանք և հասան Միջնթաղի մատույցներին։ Միջնթաղը կառուցված է Ղորուն Կաժի թեք, ուղղահայաց լանջին։ Չորս թաղամաս ուներ, կենտրոնում Թոլոշու մեծ թաղն էր, նրանից վերև՝ Շարկանց թաղը, իսկ ցածում՝ հաջորդաբար՝ արևելքից արևմուտք, ձգվում էին Մելիքանց և Ավետանց թաղերը։ Մեծավորի ընտանիքն ու հարազատները ապրում էին Մելիքանց թաղում։

Երեք ճամփաներով կարելի է մոտենալ գյուղին։ Նրանցից մեկն անցնում էր անջրդի արտի գլխից սուրբ Դավթի մատուռի մոտով, և քանի որ այդ տեղերին հսկում էր կիսակցի քաջասիրտ դարբնի պահակախումբը, ապա ավազակները ոչ մի կերպ չէին կարող աննկատ անցնել։ Երկրորդ ճամփան անցնում էր բաց արտերի միջով, այդտեղով անցնելը վտանգավոր էր, չէին անցնի։ Նրանք ընտրեցին երրորդը, առվի ափով անցնող այցուղին, որը թեև ամենակարճն էր, բայց և ամենից դժվարն էր։ Չորռուք էր կոչվում այն։ Չորռուքի առվի երկու կողմերից բարձրանում էին վիթխարի ընկուզենիներ, դարավոր կաղնիներ, որոնց կատարները եկել, մոտեցել խառնվել էին իրար և կազմել մի վիթխարի բնական կամար։ Անկասկած այդպիսի տեղով անցնելու համար միայն քաջասիրտ լինելը քիչ է, դրանից բացի մարդ պետք է նաև խենթի մեկը լինի։

Գիշեր էր, սև, խավար գիշեր, դեպի իրենց նպատակն էին գնում մի խումբ թուրք հեծյալներ։ Լուռ էին բոլորն էլ և չափից ավելի լարված։ Արահետից ցած գլորվող ամեն մի քար, կամ հողակտոր կարող էր մատնել նրանց և գցել Դշնամու ձեռքը։ Ոչ մի տեղից ոչ մի ձայն չէր լսվում։ Միայն

ձիերն էին, որ երբեմն վրնջում էին մեղմորեն, կամ անզգուշաբար քարերին էին խփում սմբակները և պայտի հարվածները տասնապատիկ արձագանքներով տարածվում էր լռության մեջ։ Ինչ-որ տեղ ծառի կատարից աղմուկով ցած թռավ վախեցած մի թռչուն և նրա թևերի աղմուկը ձորերը լցրեց խուլ շրփշրփոցով։ Հեծյալները հեռվից լսեցին գայլերի ոռնոցները, հոգնած ձիերի քրտինքի հոտը հասել էր նրանց ռնչերին։ Մի հաստ կաղնու բնի ետևին կանգնած խելառ Բագարը քիթը ծածկեց թաշկինակով, որ չփռշտա, նա տանել չէր կարողանում ձիերի քրտինքի հոտը։ Նա կանգնած հաշվում էր անցնող հեծյալների քանակը։ Երբ հանձնարարությունը կատարված էր, հաշվելն ավարտեց, ստվերի նման լուծվեց գիշերվա թանձր խավարում։

Դուրսուն բեգին և իր տղաներին «ուղեկցում էին» մի խումբ հայ տղաներ։ Նրանք սահում էին անանցանելի ժայռերի վրայով և տեսնում էին, թե ինչպես էր հեծյալների փոքրիկ ջոկատը գնում դեպի լարված թակարդը։ Տեսնում, ուղեկցում և սպասում էին, որ թակարդի դուռը բացվի և առնետները մեջը մտնեն։ Բեգն ընթանում էր խմբի առջևից, նրան հետևվում էին օգնականն ու զույգ թիկնապահները։ Գնում էին լռելյայն։ Գիշերը խավար էր։ Ընկուզենիների գիշերային դառը հոտից էր, թե ձորի պռնկին հավասարակշռությունը պահպանելու անսահման լարվածությունից, այդ դժվար է ասել, բեգի գլուխը մի պահ պտտվեց, և նա սանձեց իր արաբական նժույգը…

* * *

Երևի դարերի խորքից էր գալիս այդ սովորությունը, որ խոտորջուրցիները համարյա առանց բացառության հացթուխներ էին։ Այդ նրանց պապենական արհեստն էր և անհիշատակ ժամանակներից շարունակում էր նրանցը մնալ։ Խոտորջուրցի տղամարդիկ մշտական պանդուխտներ էին, գնում էին օտար երկրներ՝ երկու, երեք, հինգ տարով։ Վերադառնում էին վաստակած և նորից մեկնում պանդխտության։

Գյուղի պատանիներից մեկի ժամանակն արդեն եկել էր, հայրը նրան պանդխտության էր ուղարկում. «Հաց թխելը գի-

տես, խմոր հունցելը նույնպես, մնում է, որ քեզ լավ պահես, վարպետներիդ լսես։ Զգույշ եղիր, որ քեզ չխաբեն ամբարիշտ մարդիկ, եթե քեզ ասեն՝ եկ մեզ հետ ավար հավաքենք, մարդ սպանենք, մեր տները լցնենք ավարով, մի երթար ճանապարհ ընդ նոսա, զի ոտք նոցա ի չարիս ընթանա»,— նա կարդաց այս վերջին բառերը ծաղկաքաղից, փակեց գիրքն ու սրբեց աչքերի խոնավությունը։

Քերոբը մեկնում էր Թիֆլիս։ Վերջանում էր մայիս ամիսը։ Եվ ահա մի օր էլ նստեց իրենց ճերմակ ձին, հրաժեշտ տվեց և ճամփա ընկավ։ Երբ նա դուրս եկավ գյուղից և մտավ իրեն ծանոթ կածանը, կածանի վրա մի սիրունիկ աղջիկ տեսավ, վարդերով լի զամբյուղը շալակին։ Սանձեց ձիուն, իջավ ձիուց, որ սիրուն աղջկանը ճամփա տա։ Կածանը նեղ էր, ձիավորն ու ոտավորը միաժամանակ անցնել չէին կարող։ Քերոբն իջավ ու զարնվեց... Նրան թվաց, թե ինչ-որ բան սիրտը մըտավ ու հաճելի ջերմությամբ լցրեց սիրտը։ Աղջիկը նայեց պատանուն, հայացքը խոնարհեց, նրանք երկար ժամանակ այդպես կանգնած մնացին՝ խոսել չէին կարող։ Այս բանը տեղի ունեցավ Սունինց գյուղի փարթամ պարտեզների ու մեծ գետի փրփրադեզ ալիքների աղմկոտ ջրերի ափին։

— Դու իմ առաջը եկար վարդերով լիքը զամբյուղը շալակիդ, սիրունիկ աղջիկ,— շշնջաց Քերոբը։

— Իսկ դու հայտնվեցիր հեքիաթներում ասված արքայազնի նման՝ սպիտակ նժույգին նստած,— ասաց սիրունիկ աղջիկը և վարդի մի կոկոն հանեց զամբյուղից ու մեկնեց Քերոբին։ Քերոբը վարդը վերցրեց, ամրացրեց իր կրծքին և գրկեց սիրունիկ աղջկա ուսերը.

— Տես, մարդու չերթաս։ Երեք տարի ինձ սպասե, Թիֆլիսից գամ, կառնեմ քեզ, սիրունիկ աղջիկ։

Ժպտաց սիրունիկ աղջիկն ու ոչինչ չասաց։ Զգացված Քերոբը ուզեց համբուրել։ Սիրունիկ աղջիկը մի շառաչուն ապտակ իջեցրեց Քերոբի դեմքին, դուրս եկավ կածանից ու անհետացավ թփուտների մեջ։ Քերոբը շշմած կանգնած էր։ Աղջիկն անցավ գետը և այն ափից հրաժեշտ տվեց պատանուն, ճոճելով իր կարմիր թաշկինակը և ճչաց, ասաց, որ կսպասի։

Անցան Քերոբի նշանակած երեք տարիները, և նա վերադարձավ Թիֆլիսից։ Նա արդեն քսան տարեկան էր, չէր մո-

ռացել իր սիրունիկ աղջկան, հիշում էր, բայց ոչ անունը գիտեր, ոչ տան տեղը և ոչ էլ ծնողներին, ոչինչ չգիտեր։ Նա միայն հիշում էր այդ աղջկան և անվանում էր նրան՝ «Վարդերով աղջիկ» և իր բոլոր հուշերը կապում էր վարդերով լի զամբյուղի հետ, իր ստացած շառաչուն ապտակի հետ, կարմիր Թաշկինակի հետ և չէր մոռանում «Կսպասեմ» ձայնը։ Քերոբը եկավ և շատ անհանգստացավ, նա շուտ-շուտ էր գընում Սունինց գյուղը, իր մորաքրոջ մոտ։ Նա ամեն օր պատմում էր մորաքրոջը այն, ինչ որ գիտեր այդ աղջկա մասին։

— Գտիր, մորաքույր, գտիր էն վարդ աղջկան։ Նա ըսպասում է ինձ, ես գիտեմ, ես զգում եմ, որ սպասում է։ Ես նրան ասացի սպասե, սպասե, մարդու չերԹաս։ Ինձ երեք տարի սպասե, գամ, կառնեմ քեզի։

— Ո՞վ է քո վարդ աղջիկը, Քերոբ, որդիս, ինչպե՞ս գըտնեմ ես նրան,— ասաց մորաքույրը։

— Իժով ռունդ է[1], մորաքույր, համարձակ է ու լեզվանի։ Ինքը վարդ էր ու վարդերի պարտեզեն կուգար։

— Ծո, սև չուխտ խնդաձորցի, Սունինց աղջիկներ ամենքն ալ իժով ռունդ են, համարձակ ու լեզվանի։ Բոլորն էլ վարդ են ու գարնանը վարդերի պարտեզներից կուգան։ Սունինց յոԹ Թաղ ունի, հարյուր հիսուն տուն, մորաքույրդ ինչպե՞ս գիտենա, Թե ո՞ր պարտեզի մեջ է բացված քո վարդը։

Խոտորջուրցիներն ասում են՝ մորաքույրը քրոջ որդու համար ցորենի մեկ հատիկի չափով է միայն պակաս լինում հարազատ մորից։ Նա փնտրում և գտնում է այդ վարդ աղջկան։

Խոտորջուրում աղջիկներին ամուսնացնում էին մինչև տասնյոԹ տարեկան դառնալը։ Վարդ աղջկան գտան Կողեր կոչվող բարձրադիր Թաղում։ Անունը Կատար էր։ Նա էլ շատ ուզողներ էր ունեցել, բայց բոլորին էլ մերժել էր ասելով՝ որ սպասում էր իր ճերմակ ձիավորին, որի ոչ անունը գիտե և ոչ էլ ով լինելը։

Իհարկե, գյուղում մեծ հարսանիք եղավ։ Կատարն ու Քերոբը ամուսնացան, բայց ցավոք երկար չտևեց նրանց ամուսնական երջանկուԹյունը։

---

[1] Իժով ռունդ— շատ գեղեցիկ։

Քերոբը նորից գնաց օտարություն։ Հարկերը շատ էին ու բազմազան, այդ բոլորը պետք է վճարվեր։ Ինքն արդեն տուն ուներ, պատվի ու պարտականության զգացումն անչիջում էր և բավականին մեծ։ Պետք էր գնալ, այլապես պարտքերը վճարել հնարավոր չէր լինի և Թուրք բեգերը ոչ միայն կլանայերն ունեցվածքն ու տունը, այլև բանտ կնետեին իրեն։

Ինչպես բոլոր գնացողների, այնպես էլ Քերոբի համար հեշտ չէր անցնում ժամանակը օտարության մեջ։ Դժվար էր նաև Կատարի համար, դժվար էր ամբողջ Խոտորջուրի համար։

Ծանր լուրեր էին գնում Խոտորջուրից, հասնում օտարության մեջ գտնվող խոտորջուրցիներին։ Նրանք դրամական օգնություն էին հասցնում իրենց ընտանիքներին և Մեծավորին, որպես հանրային պարտականություն և ամեն անգամ խնդրում էին, որ իրենց մշտապես տեղյակ պահեն բոլոր անցուդարձերին և իր ժամանակին։ Այդ տարի այնպես պատահեց, որ խոտորջուրցիներից շատերը շուտ վերադարձան օտարությունից, դրությունը երկրում լարված էր, մարդկանց և դրամի պահանջը մեծ։ Այդ տարի շուտ վերադարձավ նաև Քերոբը։ Ամեն ինչի հետ նա մի ժամացույց էր բերել Կատարի համար։ Ժամացույցը ժամը մեկ անգամ նվագում էր Կատարի սիրած երգը՝

«—Ուսկյուտարեն գալու ատեն առավ մի անձրև»։

Մանկան պես ուրախացավ Կատարը, ինքը երգել չգիտեր, բայց իր համար երգում էր ժամացույցը, երգում էր նաև Քերոբի համար, և քաղցր էր երգն ու մեղմաձայն։ Ճանապարհից եկած Քերոբը պառկեց քնելու և խնդրեց Կատարին.

— Կատար, նայե ժամացույցին և գիշերվա ժամը երեքին ինձ արթնացրու։ Տես, ինքդ քնով չընկնես, շատ կարևոր գործ է, անպայման արթնացրու։

Մինչև իր տուն մտնելը Քերոբն արդեն անհանգիստ էր։ Կատարը ոչինչ չհարցրեց նրան, թե ինչու՞ է անհանգիստ։ Նա սպասում էր, որ Քերոբն ինքն ասեր։ Նա նստել էր քնած ամուսնու կողքին, նայում էր նրան և աշխատում էր գուշակել նրա անհանգստության պատճառը։ Մի բան լավ գիտեր Կատարը, որ ինքը երբեք էլ նրա անհանգստության պատճառը լինել չի կարող, որովհետև ինքը ողջ և առողջ է և շատ

է սիրում Քերոբին։ Բայց այնպես պատահեց, որ Կատարի քունը տարավ և քնեց։ Քնեց և սարսափելի երազ տեսավ. իբր թե Քերոբը մի գեղեցիկ թռչուն է դարձել, թռչում է դաշտերի, արտերի վրայով և երգում է իր համար, իր սիրած երգը՝ «Ուսկյուտարեն գալու ատեն առավ մի անձրև»։ Եվ, իբր ինքն էլ հմայված լսում է նրան։ Եվ հանկարծ, մթին լեռների կողմից ուրուրների մի երամ գալիս հարձակվում է Քերոբի վրա։ Ահավոր կռվից հետո, երբ ուրուրները թռչում հեռանում են, կանաչ դաշտի վրա մնում են գետնին թափված Քերոբի ճերմակ-ճերմակ ոսկորները և փուշ ընկած ակնախորշերով գանգը։ Կատարն արթնանում է սարսափից քրտնած և սաստիկ վախեցած։ Երկար ժամանակ ուշքի գալ չի կարողանում և, երբ ուշքի է գալիս, մտածում է չարթնացնել Քերոբին։ Քերոբն ինքն է արթնանում արդեն փոքր-ինչ ուշացած.

— Ինչու՞ չարթնացրիր ինձ, Կատար։

— Դու այսօր ոչ մի տեղ էլ չես գնա, Քերոբ, վատ երազ եմ տեսել քեզ վրա։ Դու լսիր ինձ, տնից դուրս մի գա, երազս վատ է, քեզ վատ բան կպատահի։ Խնդրում եմ քեզ, այս անգամ լսիր ինձ, սիրտս չար բան է զգում։

— Ոչ, Կատար, այդ քո գործը չէ։ Բեր արծաթե գնդակներս,— ասաց և սկսեց հագնվել,— չէ՞ որ ես տղամարդ եմ։

Դեռ օտարության մեջ Քերոբին ասել էին, որ Դուրսունբեգին սովորական գնդակը չի վնասում, որ նրա հագին զրահ կա և խնդրել էին զինագործ վարպետներին Քերոբի համար հինգ հատ արծաթե գնդակներ պատրաստել՝ հետը տանելու համար։

— Եթե բեգի հագին զրահ կա,— ասել էին վարպետները,— այս գնդակը պանրի նման կծակի նրան, իսկ եթե զրահ չկա, այս գնդակը կծակի բեգին, կանցնի նրա մարմնի միջով և կծակի նրա ետևից եկողներին նույնպես։

— Տուր գնդակները, Կատար,— ասաց Քերոբը հագնվելուց հետո։

— Գնդակները չկան, տվեցի քեռուս։ Նա եկել էր քեզ տեսնելու, դու քնած էիր, չթողեցի, որ քեզ արթնացնի։ Խոսքի մեջ ես ասացի նրան այդ գնդակների մասին և ցույց տվեցի։

— Տուր ինձ, ասաց քեռին, ես Քեռուց ավելի լավ նշանառու եմ։ Բեգի սիրտն ինքս կխոցեմ։

— Վայ, անիրավ,— բղավեց Քեռոն և ձեռքի ուժեղ հարվածով իրենից մի կողմ հրեց Կատարին,— վերցրեց հրացանը և նետվեց դեպի դուռը։ Կատարը փակեց նրա ճանապարհը.

— Չեմ թողնի,— բղավեց նա անմարդկային ձայնով,— չեմ թողնի։ Չես գնա։

Քեռոն այնպես հրեց Կատարին, որ Կատարը գետին տապալվեց։

— Սպասիր, Քեռո, մի գնա, սպասիր, վերցրու գնդակները։ Ես քեզ խաբում էի, խաբում էի, որ չգնաս։ Ես քեզ սիրում եմ, վախենում եմ, որ քեզ հետ վատ բան կպատահի, վատ երազ եմ տեսել։ Մենք երեխա պետք է ունենանք, Քեռո, չեմ ուզում, որ երեխաս անհեր մեծանա։

— Տուր գնդակները, ժամանակ չմնաց։

— Վերցրու Նարեկի քովն են։

Քեռոն անհասկանալի արագությամբ նետվեց դեպի Նարեկը, վերցրեց գնդակները և առանց մի խոսք ասելու Կատարին, դուրս թռավ տնից։ Ուշանում էր, վազեց։ Երբ տեղ հասավ ու կանգնեց նշանակված տեղում, ուզեց մի պահ հանգստանալ, շունչ քաշել, զգաց մոտեցող ձիերի քրտինքի հոտը։ Տեսավ առջևից ընթացող բեգին, դուրս եկավ նրա առջև։ Առաջ պարզեց հրացանի փողը և բարձրաձայն գոչեց.

— Դավրանմա գեթդին (չշարժվես, կսպանվես)։

Այդ պատանին խնդաձորցի Քեռո Ոսկանյանն էր։

Մինչև խոտորջուրցի տղաները կհասնեին, Քեռոն կռվի բռնվեց ավազակների հետ և շատերին ձորը գլորեց։

Եվ, երբ ամեն ինչ վերջացած էր արդեն ու ինքը տուն էր դառնում, երբ ոսկյա առավոտը բացվեց Խոտորջուրի վրա, արևը հպարտ բարձրացավ և կրակի բոցերով բռնկեց լեռների կատարները, մարդիկ տեսան Քեռոյին, վազեցին դեպի նա, վազեցին գրկաբաց, անզուսպ հրճվանքով և իրենց գիրկը առան հերոս լեռնցուն։ Հենց այդ պահին թփուտների միջից մի հատիկ գնդակ արձակվեց և գնդակն այդ այդքան մարդկանց միջից ընտրեց Քեռոյին և սիրտը խոցեց։

Խնդաձորը լցվեց լաց ու կոծով։ Վիշտը լեռնացավ և ընկած հերոսին թաղեցին Խնդաձորի եկեղեցու բակում։ Այդ ժամանակվա ճանապարհորդներից մեկը մեզ է հասցրել Քերոբի նկարագիրը.

«—Քերոբը սիրուն մանչ էր, բարի, կորովի ու վառվռուն։ Տան մեջ՝ հլու զավակ, հնազանդ։ Վարժարանում՝ առաջին աշակերտ, ուշիմ ու մտադիր։ Շատերեն փնտրված ընկեր և շատերեն սիրված տղա։ Օժտված էր գեղեցիկ ձայնով և հրատակ առոգանությամբ... Քերոբը քաջակորով ու շքեղ այր էր, թխադեմ, միջակից բարձր հասակով, լայնաճակատ, գանգրահեր, նշաձև սևորակ ու հրացայտ աչքերով։ Բնավորությամբ շուտ բռնկվող, տաքարյուն, միաժամանակ մշտուրախ, երգ ու նվագի սիրահար՝ հոյակապ պարբաշի»։

Ուղղափառ մուսուլմանների համար գյավուրի գնդակից, կամ սրից ընկած (մանավանդ կռվի մեջ) շահիտի (վկա) դիակը գերի թողնելը մեծագույն սրբապղծություն է։ Այդ էր պատճառը, որ Դուրսուն բեգի ծերունի հայրը, մի որոշ ժամանակից հետո, ռիզեցի մի խումբ պատվարժան ծերունիների հետ, Մամուշ Ջադեի առաջնորդությամբ, մեծարժեք և մեծաքանակ նվերներով մտան Խոտորջուր, ներկայացան Մեծավորին և բեգի ծերունի հայրը ծնկաչոք աղերսեց.

— Եկել եմ մեր սուրբ օրենքի համաձայն, խնդրում եմ որդուս դիակը հանձնեք ինձ, մեր սիրելի դրկից հարևաններ։ Նա ընկել է մարտում։ Նա մեր սուրբ վկան է՝ իմ հարազատ որդի Դուրսուն բեգը։ Մենք նրան ալլահի օրենքով հողին կըհանձնենք։ Նա այլևս երկրային չէ և ոչ մի կապ չունի այս անցավոր աշխարհի հետ։ Խնայեցեք իմ ծերությունը և հայրությունը, եթե չեք կարող՝ սպանեցեք ինձ նույնպես և իմ դիակը տարեք որդուս դիակի մոտ։

— Հարգարժան հայր և հարևան, ես կկատարեմ ձեր ցանկությունը, կհարգեմ ձեր օրենքը և ձեր որդու դիակը կհանձնեմ ձեզ թաղելու համար։

Իհարկե, Մեծավորը, լավ ծանոթ լինելով մուսուլմանական այդ օրենքին, ժամանակին կարգադրել էր, որ Դուրսուն բեգի դիակը դնեն ցինկե դագաղի մեջ և տանեն Գբեր, բարձրանիստ զամպի մեջ պահեն, դիակի վրա էլ պահակներ դընեն, որ դիակը չգողանան։ Դուրսուն բեգի դիակը բերեցին,

ինչպես կարգն էր համձնեցին ծերունի հորը։ Դուրսուն բեգի ալեհեր հայրը լալիս էր որդու դիակի վրա։

Դուրսուն բեգը թաղված է Ռիզե քաղաքի մոտ իրենց տոհմական գերեզմանոցում։

Այս դեպքը հուշեց Էրզրումի վալուն, որ ինչ որ տեղ Թուրքիայի պատմության մեջ ճեղք առաջացավ, որ հարկավոր է, քանի դեռ ուշ չէ, այդ ճեղքը լցնել միացնող, ամրացնող շաղախով։

Էրզրումի վալին իր մոտ կանչեց Մամուշ Ջաղեին և այսպես խոսեց նրա հետ.

— Հարգարժան էֆենդի, շատ փոքրիկ է բացիլն իր չափերով, աչքի համար անտեսանելի, բայց ահավոր է նրա կարողությունը և կործանարար։ Նա, այդ աննկատելի էակը, կարող է գետին տապալել գոմեշին, փոշի դարձնել փղին, երկրներ քանդել, թագավորություններ կործանել և հզորագույն բանակներ պարտության մատնել։ Դուք էլ մեծ Թուրքիայի թշնամիների մարմնի վրա անտեսանելի մի բացիլ եք միայն, բայց հզոր և ահավոր ուժի տեր։ Ձեզ չեն տեսնում միջազգային գործերում, չեն ճանաչում աշխարհի մեծերը, բայց այն ամենն, ինչ որ անում եք դուք, տեսնում է ամենատես ալլահը, որովհետև ձեր արած գործը շատ մեծ է և սրբազան ու մոտ է նրա սրտին։ Գնացեք ուրեմն, ալլահը ձեզ պահապան։

Եվ այդ օրվանից Մամուշ Ջաղեն պետք է փոխարիներ Դուրսուն բեգին։ Դարեր շարունակ այդ փորձված ձևը գործել և միշտ էլ տվել է իր լավ արդյունքը։ Ամենուրեք նման ավազակախմբերը բացիլների նման ջլատել ու թուլացրել են այն ուժերը, որոնց դեմ է ուղարկել նրանց խալամը, բայց իրենք էլ կույլ են գնացել խալամի ամենակուլ երախին։ Սրանք են պատերազմել առանց պատերազմ հայտարարելու, սրանք են հրկիզել, քանդել, ոչնչացրել առանց հրամանի և գեներալների, առանց մեծամեծ զորաբանակների։ Սրանք են հրապատակեցրել, հավատափոխել, լեզվափոխել ոչ մուսուլմանական ազգությունների հատվածներին։ Այս փոքրիկ ավազակախմբերը մեծ, պետական նշանակություն ունեցող գործեր են կատարել, և թվացել է, թե այդ բոլորը կատարել են Թուրքական պետության կամքին հակառակ, նույնիսկ դավա-

ճանության գնով։ Թուրքական օրենքը երբեմն հետապնդում է դրանց, ընկնում է դրանց ետևից, որպեսզի չափը չանցնեն, ինչ որ չափով մտածված գործեն, մերկապարանոց բաներ չանեն և այնպես անեն, որ իրենց արարքը ոչնչով չկապվի պետության հետ.

— Արևելյան դիվանագիտությունը կրքոտ է, գեղեցիկ, նման է մշուշի մեջ կանգնած հրապուրիչ դիցուհու մերկ իրանին, որին ձգտում են մոլորված ասպետները, բայց երբեք հասնել չեն կարողանում։ Այն երազի նման քաղցր է, թույնի նման վտանգավոր, մեղկության պես փափուկ և սրի նըման խոցող,— ասաց Մամուշ Ջաղեն էրզրումի վալուն,— ես չեմ սիրում կոպիտ ու գռեհիկ աշխատանքը, ես ավազակ չեմ և այդպես գործել չեմ կարող։

— Լավ,— ասաց վալին,— դուք իրավացի եք, ինձ դուր է գալիս ձեր մոտեցումը։ Մենք նորից առիթներ կունենանք հանդիպելու։

Վալու համար դժվար չէր ուրիշ ավազակախմբեր ճարելը այդ ավազակաշատ երկրում։ Նա մարդիկ ուղարկեց և իր մոտ հրավիրեց նշանավոր ավազակապետ Կակաչ օղլուն, բայց սա էլ մերժեց ասելով.

— Ես այնքան ուժ չունեմ, երեսուն մարդով ի՞նչ կարող եմ անել։

էրզրումի վալու մոտից վերադառնալուց հետո Մամուշ Ջաղեն եկավ Խոտորջուր։ Նա ներկայացավ Մեծավորին և ամեն ինչ մանրամասն պատմեց նրան.

— Դուք ոչինչ անել չեք կարող,— ասաց նա Մեծավորին։— Դուք չեք կարող ոչնչացնել բոլոր ավազակապետերին։ Թուրքական օրենքը միշտ էլ ցույց կտա, որ պաշտպանում է ձեզ, որ այդ ավազակախմբերը ոչ մի կապ չունեն պետության հետ, որ իրենք նույնպես շահագրգռված են դրանց վերացնելում, դուք չհավատաք, այդ այդպես չէ։ Այդ բոլորը հրահրվում և հովանավորվում է այնտեղից,— նա մատը վեր ցցեց,— իսկ այնտեղ ցանկանում են, որ դուք չլինեք աշխարհում, առհասարակ չլինեք։ Ես լազ եմ, ես չեմ սիրում թուրքերին և իմ հաշիվներն ունեմ նրանց հետ։ Ես գիտեմ, որ հայերը երբեք չեն մտերմանա թուրքերի հետ, դուք ինձ համար ամենավստահելի զինակիցներ

կարող եք լինել։ Ահա, ես իմ զենքը դնում եմ ձեր ձեռքը, իմ հոգին տալիս եմ ձեզ, խնդրում եմ հավատացեք ինձ, ես ձեր ամենամոտ օգնականը կլինեմ, և այնպիսի մարդիկ կհավաքեմ շուրջս, որ ինձ նման լինեն։

Այդ օրվանից հետո հայերի և Մամուշ Ջաղեի միջև ամենասերտ կապերը ստեղծվեցին։ Մամուշ Ջաղեն իր շուրջը հավաքեց իր նման մտածող մի խումբ լազերի, որոնք զբաղվում էին ավազակությամբ, գողությամբ և նույնպես զտնվում էին խոտորջուրցիների պանդխտության մեկնելու և եռդարձի ճանապարհներին։ Լավ զինված, կարգապահ այս ավազակախումբը, իհարկե, Խոտորջուրի կողմից առատ վարձատրությունից հետո, ապահովում էր Խոտորջուրից Ռուսաստան մեկնող և այնտեղից վերադարձող պանդուխտների ու քարավանների ապահով տեղ հասնելը։ Եվ նա իր գործունեության ընթացքում թույլ չտվեց, որ երբևիցե խոտորջուրցիները ճանապարհին ենթարկվեին կողոպուտների, կորուստներ ունենային մարդկանց կամ ունեցվածքի։ Բացի այդ, ավազակախումբն արդեն ճանաչված «Քարավանախումբ» էր համարվում, որ բաղկացած էր հարյուրից ավել բեռնատար գրաստներից։ Այդ քարավանախումբը սկսեց կանոնավոր երթևեկություն կատարել նաև Ռիզա-Սպեր գծի վրա, սկսեց զանազան բեռներ փոխադրել Ռիզա-Սպեր և ընդհակառակն՝ Սպերից-Ռիզա Սև ծովի ափը։

Համեմատաբար ավելի երիտասարդ էր Մամուշ Ջաղեն, դեռ նոր էր լրացել նրա վաթսուն տարին։ Բարձրահասակ էր, կապուտաչյա, շիկահեր, ուրախ, կատակասեր։ Խոսում էր նաև հայերեն։ 1895—96 թվականների հայկական ջարդերի ժամանակ Մամուշ Ջաղեն, ինչպես համշեցի Կոպալ Օղլին, իրենց զինված մարդկանցով մտան Խոտորջուր, միացան խոտորջուրցի հայ մարտիկներին, Սպերում հավաքված թուրք խուժանի դեմ կռվելու համար և դրանով արգելեցին նրանց մուտքը Խոտորջուր, որի հետևանքով էլ բուն Խոտորջուրը և նրա շրջակայքի հայկական գյուղերը կոտորածների թատերաբեմ չդարձան, նյութական և մարդկային կորուստներ չունեցան։

1914 թվականի աշնանը, երբ Ռուսաստանի և Թուրքիայի միջև արդեն դադարել էր փոստային հաղորդակցությունը,

որի պատճառով խոտորջուրցիները կտրվեցին իրենց հարազատներից և դրամի մեծ կարիք ունեցան, Մամուշ Ջաղեն ինքն անձամբ մեկնեց Ռուսաստան, եղավ Ռուսաստանի այն վայրերում, որտեղ ապրում և աշխատում էին խոտորջուրցի հայերը, հավաքեց նրանցից մոտ վաթսուն հազար ոսկե դրամ, բերեց Խոտորջուր այն ժամանակ, երբ Ռիզայում արդեն սկսել էին մոլեգնել հայկական ջարդերը և բերած ոսկիները կոպեկ առ կոպեկ հանձնեց նրանց, ում համար որ բերել էր։

1915-ին, երբ արդեն Խոտորջուրը կանգնած էր գաղթելու վտանգի առաջ, նա եկավ Խոտորջուր և ամեն ինչ արեց, ինչ որ կեր, այն ինչ հնարավոր էր, գաղթը կանխելու համար, բայց հասկանալի էր, որ դրանից ոչինչ չէր կարող ստացվել։ Ծրագրված պետական քաղաքականությունն այդ ձևով կասեցնել անհնարին էր։ Միակ բանը, որ նա կարող էր անել և արեց, այն էր, որ ինքն իր մարդկանցով ուղեկցեց գաղթող հայերին և մեծ օգնություններ ցույց տվեց տեղահան արված ժողովրդին գաղթի արյունոտ ճանապարհներին։ Եվ, երբ հասան Երզնկա, տեղական իշխանություններն իմացան Մամուշ Ջաղեի ուղեկցության և օգնության մասին և անմիջապես արգելեցին նրան, մահվան սպառնալիքի ներքո, ուղեկցել հայերին։

Խոտորջուրի հերոսական պաշտպանությունից հետո, երբ հայ զինվորների մի մասը հիվանդ, վիրավոր, ձերբակալվեցին Թուրք իշխանությունների կողմից և տեղափոխվեցին Տրապիզոնի բանտը, Մամուշ Ջաղեն չվախեցավ, քաջաբար գնաց նրանց ետևից։ Միջնորդություններ հարուցեց և իր ունեցած կապերով կարողացավ ձերբակալվածներին նյութական, իրավաբանական, բժշկական և այլ օգնություններ ցույց տալ։ Այդ օրերին, եթե այնտեղ չլիներ Մամուշ Ջաղեն, Տրապիզոնի բանտում եղածներից ոչ մեկը կենդանի չէր մնա։ Բանտարկված հայերի դատավարության ժամանակ Մամուշ Ջաղեն դատարանում հանդես եկավ որպես անպաշտոն պաշտպան, որպես վկա և համարձակվեց խոսել դատախազի մեղադրանքի դեմ։ Նա չվախեցավ, նա տղղակի դիմեց դատավորին հետևյալ խոսքերով.

— Նրանք մեզ վրա չեն հարձակվել։ Մենք ենք առաջին անգամ նրանց վրա հարձակվել։

— Ինչու՞ հարձակվեցիք,— ընդհատեց նրան դատախազը։

— Հայտնի բան է, բոլորն էլ գիտեն, հարձակվեցինք նրանց սպանելու, թալանելու համար։ Այո, միայն դրա համար։ Էլ ուրիշ պատճառ չկար։ Եվ բնական է, որ նրանք պետք է դիմադրեին, պետք է պաշտպանվեին մեզանից, այլապես ինչպես կարող էին վարվել, չպաշտպանվեի՞ն, ի՞նչ հանցանք կա դրանում։ Մի՞թե ղուռանում ասված չէ, որ կարելի է պաշտպանվել։ Մի՞թե ղուռանն արգելում է պաշտպանվել, մի՞թե օսմանական դատական օրենքներն արգելում են պաշտպանվել։ Հիմա դուք դատում և ցանկանում եք պատժել նրանց այն բանի համար, որ փորձեցին պաշտպանվել, փորձեցին չընկնել մեր սրերի հարվածներից։ Նրա համար, որ նրանք համարձակվեցին փախչել մեր սրերի տակից, կամ փայտը դեմ անել վրա հասնող սրի հարվածին, որպեսզի հարվածներն իրենց չկպչեն։

— Այո, հենց դրանով էլ հայերը գրգռեցին թուրքերին,— ընդհատեց նրան դատախազը,— բարկացրեցին թուրք զինվորներին, որ ահագին ճանապարհներ էին անցել, քիչ նեղություններ չէին քաշել նրանց ետևից հասնելու համար։ Հասել էին, ուզում էին իրենց գործն ավարտել, բայց այդ հայերը խանգարում էին նրանց։ Էլ ինչպե՞ս չբարկանային։ Դուք պատկերացնու՞մ եք, պարոնայք դատավորներ, թե որքան ղայրացուցիչ է, երբ զինվորը հասել է արդեն իր նպատակին, սուրը բարձրացրել է, որ գյավուրի վիզը կտրի և այդ գյավուրը ձեռնափայտը դեմ է անում և սուրը կտրել չի կարողանում, իհարկե, այդպիսի զինվորը ոչ միայն կկատաղի, այլև խելագարության կհասնի և նորից կատաղությամբ կնետվի զոհի վրա և դաժանորեն կսպանի նրան։ Մի՞թե այսպիսի պայմաններում հնարավոր է մարդուց գթություն հայցել։ Այո, իրենք հայերն են մեղավորները, նրանց վայրենի վարքագիծը համբերությունից հանում է ամեն մի ազնիվ, հավատացյալ մուսուլմանի, նրանք զայրանում են սաստիկ և իրավացիորեն ցանկանում են պատժել նրանց, իրենց անվայել վարքագծի համար։ Հնազանդ լինելու փոխարեն դիմադրում են։ Աստծու և մարգարեի գրած օրենքներով նրանց ինքնապաշտպանությունը արդար կլիներ և բնական, եթե նրանք ընդունե-

ին մուսուլմանական հավատը։ Իր ժամանակին և հիմա էլ ասում, բացատրում են նրանց, համոզում, հորդորում են ընդունել մուսուլմանական մաքուր կրոնը, բայց նրանք չեն ընդունում։ Էլ ինչու՞ և ինչպե՞ս կարելի է մեղադրել մեծ հավատի աղնիվ զինվորներին։ Ետ վերցրեք ձեր խոսքը, Մամուշ Ջադե, չէ՞ որ նրանք կռվել են մուսուլմանների դեմ։

— Այո, նրանք կռվել են,— ասաց Մամուշ Ջադեն,— բայց կռվել են միայն իրենց տների, բնակարանների առաջ, իրենց բակերում, իրենց սենյակներում։ Այդ պետք է արձանագրի մուսուլմանական դատարանը և նկատի ունենա վճիռ կայացնելիս։ Նրանք չեն հարձակվել իրենց մուսուլման հարևանների և նրանց գյուղերի վրա, նրանք դուրս չեն եկել իրենց գյուղերի սահմաններից, այդ էլ բավական է, որ նրանք արդար ճանաչվեն։

Մյուս բոլոր վկաները խոսեցին այսպես.

— Եթե հայերը թուրքերին չանհանգստացնեին, թուրքերը նրանց ձեռք չէին տա։ Ես գնացի մի հայի տուն, ձի հանեցի ախոռից, որ մի քանի օրով տանեմ, երբ դուրս եկավ և ոչ միայն ձին խլեց ձեռքիցս, այլև հայհոյեց ինձ։ Եթե նա ինձ չանհանգստացներ, ես նրա վրա չէի կրակի, և նա մինչև հիմա կենդանի կլիներ, և մեր բարեկամությունը թշնամանքի չէր փոխվի։

Ինչու՞ նա այդպես արեց, ինչու՞։ Մինչև հիմա իմ սիրտը ցավում է այդ դեպքի համար։ Ես ստիպված էի կրակել, նա ինձ չէր լսում։

— Մեր բակում մի ծառ կար, այն հիմա էլ կա։ Ծառի փչակում կրետները բույն էին դրել։ Նրանք իրենց բույնը դրել էին դեռ իմ պապի կենդանության ժամանակ։ Լուսահոգի պապս ասում էր.— Զմոռենաք, չխոլխոլեք կրետների բույնը, որ խոլխոլեք, նրանք դրա համար ձեզ կպատժեն, իսկ եթե խոնարհ լինեք, ձեռք չտաք, չանհանգստացնեք նրանց, նրանք ձեզ չեն դիպչի։ Պապս ճիշտ էր ասում։ Հայերն իրենց մատը չեն հանում կրետի բնից, անվերջ խոլխոլում են։ Ասացեք, հարգարժան դատավորներ, կրետները մեղավո՞ր են, որ խայթում են իրենց բույնը խոթած մատը։

— Անհավատներին պետք էր վաղուցվանից ոչնչացնել։

— Անհավատների համար մի դատ կա միայն՝ սպանել առանց հարցնելու։

— Մեր սրերը բթացան՝ դրանց պարանոցների վրա։

— Հայկական հարցը պետք է լուծել հայերին ջարդելով։

— Հայությունը անհավատարիմ, դավադիր, ապերախտ ժողովուրդ է։

Այս էր դատարանում տիրող ոգին, այսպես էին խոսում բոլոր այն վկաները, որ ներկայացված էին դատարանում։ Եվ այսպես էլ, այս ոգով էլ կայացավ դատավճիռը։ Թուրքական ռազմադաշտային դատարանը մահվան դատապարտեց հայ բանտարկյալներին։ Խոտորջուրի ինքնապաշտպանությունը ծանր հանցագործություն համարվեց։ Նրա պաշտպաններին պետք է գնդակահարեին, մեծ մասին կախաղան պետք է հանեին։

Մամուշ Ջադեն օգտվեց իր բոլոր տեսակի կապերից, անհագին քանակի ոսկի և թանկագին իրեր դրեց։ Դիմեց բոլոր մեծերին, որոնց կարելի է դիմել՝ մեծ մասին կաշառեց, ահաբեկեց, մի մասին էլ ինչ ասես խոստացավ, աներևակայելի գումարներ վճարեց և նրա այդ հսկայական ջանքերի շնորհիվ մահապատիժը փոխարինվեց հարյուրմեկ տարվա բանտարկության՝ տաժանակրության բանտերում։

— Հայ ազգը չի կարող գոյություն ունենալ, որովհետև հայ ազգ չկա,— գրում էին թուրքական թերթերը,— Թուրքիայի մեջ մեկ ազգ կա, այդ օսմանական ազգն է։ Հայ անունը պետք է հանել գործածությունից։

— Ոչ մահմեդական տարրերը, որոնք աննկատ քանակություն են, որոնց կրոնական իրավունքները կարելի է ճանաչել, բայց ոչ լեզվի՝ պետք է խոսեն և աղոթեն թուրքերեն։ Դատավճռի փոփոխման պատճառներից մեկն էլ այն էր, որ Թուրքիան այդ տարի ծանր դրության մեջ էր. «— Ահմեդ Իզզեթափաշի կառավարությունը, աշխատելով հասնել արդարացի խաղաղություն կնքելու հնարավորությանը, որը պետք է հիմնված լիներ ազգային ինքնորոշման սկզբունքի վրա, խնդրեց զինադադար կնքել։ 1918 թվականի հոկտեմբերի երեսունին ի հայտ եկան զինադադարի պայմանները և մեր ազգը, որը պատվով և փառքով կռվեց հանուն ազատության,

զենքը վար դրեց։ Եվ հենց որ միացյալ ազգերի նավատորմը մտավ Ստամբուլ, խաղաղության պայմանները մի կողմ նետվեցին» (Աթա Թյուրք)։ Եվ Թուրքիան պարտվեց։ Հայերից նրանք, ովքեր կենդանի էին մնացել ազատվեցին բանտից, անցան Կովկաս, անցան Հայաստան։

Այս դեպքերից հետո Մամուշ Ջադեն այլևս չերևաց Խոտորջուրում։ Նրան ոչ մի տեղ չէին հանդիպում, ոչ ոք այլևս չտեսավ նրան։ Միայն զանազան լուրեր էին տարածվում նրա մասին և այդ լուրերը մեկը մյուսից ավելի սարսափելի էին և ահավոր։ Երախտապարտ հայերը երկար, շատ երկար փնտրեցին նրան, բայց ոչ մի տեղ չգտան։ Ասում էին, թե քեմալական Թուրքիան դարձավ նրա գերեզմանը։ Պնդում էին, որ Թուրքական դատարաններից մեկը նրա նկատմամբ դատավճիռ է կայացրել, մահվան դատավճիռ, թուրք կոմունիստներին օժանդակելու համար։ Նույնիսկ եղան այնպիսի մարդիկ, որ հավատացնում էին, թե տեսել են նրա աշխարհի մարմինը կախաղանի վրա ճոճվելիս։ Պատմում էին նաև, որ նա գաղթականների հետ Հայաստան է գնացել և մեռել է խոլերա հիվանդությունից հայ եկեղեցիներից մեկի գավիթում։ Այս լուրերից ոչ մեկը հավաստի չէր։

Խոտորջուրցիները թողեցին իրենց երկիրը, Խոտորջուրը դատարկվեց և մնաց թուրքերին։ Նրանք, ովքեր բռնեցին գաղթի ճանապարհը՝ տեղ չհասան։ Նրանցից շատ քչերին վիճակվեց հեռվից տեսնել ցանկալի երկիրը։

«Այս ժամանակներն անցան, վրա հասան նաև այն ժամանակները, երբ իրենց նշանակությունը կորցրեցին մանր ու մեծ ավազակախմբերը, բեգերն ու խաները։ Թուրքական կառավարությունը նրանց ետ քաշեց հրապարակից։ Նրանք, իհարկե, հեշտությամբ չզիջեցին իրենց սրբագործված իրավունքները։ Նրանց համար միս արյուն էր դարձել այդ զբաղմունքը, հիմնական բնավորություն, տևական կյանք, բայց օրենքը հետապնդեց նրանց մերկացված սուրը ձեռքին, ոչնչացրեց նրանցից ավելի կատաղիներին, բանտերը նետեց համառ ապուշներին, որոնք չէին ցանկանում հասկանալ Օսմանական մեծ պետության մեծ ծրագրերը՝ անհավատ հայերին, հույներին և մյուս ժողովուրդներին ոչնչացնելու համար։

Ավազակախմբերի, բեգերի ու խաների նյարդային խայթոցները, դաշույններն ու քյուչուչափ հրացանները կորցրեցին իրենց նշանակությունը։ Նրանք այլևս պետք չեն, այդպիսի զենքեր ունեն նաև հայերը և մեզ պատասխանում են, դիմադրում։ Հիմա արդեն Իսմեթ փաշայի պես ռազմական տաղանդները պետք է դուրս գան հայերի դեմ իսկական բանակներով և իկարճ ժամանակում ոչնչացնեն գյավուրներին։ Հիմա արդեն պատերազմ է հայտարարվում հայերի դեմ, պատերազմ։ Հիմա հեքիաթներ պատմելու ժամանակ չկա, ինչպես պատմում էին դեռ երեկ»— այսպես սկսեց իր ճառը Թուրք պատմաբանը. «Հիշու՞մ եք մեր «Երեկի պատմությունները»։ Ես լսել եմ և չեմ մոռանում իմ պրոֆեսորի դասերից ամենագլխավորը։ Նա ամբիոն բարձրացավ, շփեց հինայած մորուքը և այսպես սկսեց.

— Սուլթան Մուրադ չորրորդը նորից անհամար զորք հավաքեց, եկավ Բաղդադը պաշարեց և սկսեց մեծ-մեծ թնդանոթներով քանդել քաղաքի պարիսպները։ Մեծամեծ ջարդեր կրեցին թե ինքը և թե իր թշնամիները, վերջապես 1638 թվականի վերջին քաղաքն առավ։ Առավ և հրամայեց, որ պարսկական աղանդներին պատկանող բոլոր մարդկանց գլխատեն։ Ասում են, թե 30000 բնակիչներից հազիվ թե 300-ը փախան, ազատվեցին։ Նույնիսկ այն պարսիկներին, որոնք անցել էին օսմանական բանակի կողմը և ապավինել նրան՝ ջարդեցին։ Սուլթան Մուրադ չորրորդը հրամայեց, որ նրանցից հազար հոգու բերեն, շարեն իր դիմաց և ամեն մեկի ետևին էլ մեկական դահիճ կանգնեցնեն, և հենց որ ինքը նշան անի, այդ հազար գլուխները միանգամից գետին գլորեն։

Այդպես էլ արեցին։ Հազար գլուխ միանգամից գետին գլորվեցին։ Այդ դեպքից անմիջապես հետո ինքը Կոստանդնուպոլիս վերադարձավ, բազմեց իր ոսկե գահին և այդպես ընդունեց եվրոպական տերությունների դեսպաններին։ Պարսիկների հետ էլ դաշինք կնքեց, Երևանը տվեց նրանց, Բաղդադը վերցրեց իրեն…

Շատ չանցավ այդ օրից, նրա ոտքերի ցավը բռնեց, դրան ավելացավ նաև մեջքի ցավը, ծանրացավ։ Կանչեց իր տերության բոլոր բժիշկներին, մահով սպառնաց, բայց ոչինչ չհասցրեց անել և 1640 թվականին երեսուն տարեկան հասա-

կում մնաավ։ Քաջ մարդ էր Սուլթան Մուրադ չորրորդը, բայց իր անգթությամբ և վախկոտությամբ խորտակեց իր քաջության փառքը։— Ահա այսպես էին մեզ սովորեցնում մեր պանծալի պատմությունը, չիմանալով, որ այդ նման էր անպտուղ ծառի ճյուղերին, որոնցից ոչ հոտ էր գալիս, ոչ համ էին զգում և ոչ էլ հայրենասիրությամբ էինք ոգևորվում։ Դատարկ և դաժան հեքիաթներ։ Անցան այդ ժամանակները։ Հիմա ամբողջ աշխարհն է մեզ նայում, մենք պետք է գործենք և ոչ թե խոսենք։ Մեզ ուսուցչի ամբիոն պետք չէ, մեզ զենք է պետք, և հմտություն այդ զենքը գործածելու համար։ Մեր լեզուն այլ է լինելու, քաղցր, մեղմ ու դրախտային։ Մեր գործը սրբագործվելու է մեր լեզվով։

Եվ նա կոչ արեց հասկանալ, գիտակցել, դիվանագետ լինել և մի անգամ ընդմիշտ ազատվել հայկական կոչվող հարցից խելքի, հմտության և մասամբ էլ զենքի միջոցով։ Հասել է այն ժամանակը, երբ միջոցների մեջ խտրություն դնելը ժամավաճառություն է դիտվելու միայն։ Հայ տարրը պետք է վերջանա, Թուրքիան պետք է ախտահանվի»։

Սկսվեց հայերի տեղահանման և արտաքսման քաղաքականության իրագործումը։

«—Ուրեմն այդ հայ ազգը վերացնելու անհետ ու անճետ ընելու ենք։ Եվ այդ ի գլուխ հանելու համար բան չի պակսիր մեզ։ Ամեն գործիք պատրաստ ունինք՝ քուրդ, չերքեզ, կուսակալ, դատավոր, հարկահան, ոստիկան, վերջապես ամեն ինչ, կրոնական պատերազմ մը կըհրատարակենք, և դյուրին պատերազմ այնպիսի ազգի մը դեմ, որ ոչ զենք ունի, ոչ զինվորություն, ոչ պաշտպան։ Եվ հակառակը՝ մենք և զենք ունինք, և զինվորություն, և Եվրոպայի ամենամեծ տերությունն էլ մեզ նիզակակից է և փոքրասիական մեր տիրապետությունների հովանավորը... Եվ եթե այդ հայ ազգը բնաջինջ լինի և քրիստոնեական Եվրոպան կրոնակից մը փնտրե և չգտնե տաճկական Ասիո մեջ, կը թողնե զմեզ հանգիստ...»։

Առավոտը շուտ, լույսը նոր էր բացվել, միջնթաղցիներին արթնացրեցին թուրքական լագութչիկները։ Նրանք շրջում էին փողոցներում, ծեծում էին տների դռները և բարձրաձայն գոչում.

— Մեծ ու պստիկ հավաքվեցեք եկեղեցու բակը, տներում ոչ ոք չմնա, վալու հրամանն է։

Խոտորջուրը դատարկվել էր։ Այնտեղ մնացել էին ծերունիները, երեխաները, հրացան բռնողներ չկային, դիմադրող ոչ մի ուժ, դրա համար էլ շրջում էին լազութչիկները և հայտարարում վալու կամքը։ Նրանք չէին գգուշանում, չէին վախենում, այս անգամ քաջաբար էին գործում։ Երկրի տերերը երիտասարդ թուրքերն էին։ Ցեղամոլ ավազակների մի ամբողջ ոհմակ իր ձեռքն էր վերցրել իշխանությունը, երկիրը լսում և ճանաչում էր նոր անուններ՝ Թալեաթ փաշա, Ջեմալ փաշա, Էնվեր փաշա, դոկտոր Բուհա-էդդին Շաքիր, դոկտոր Նազըմ և ավելի փոքր ու կատաղի գիշատիչներ։ Այդ այն ժամանակներներն էին, երբ Թալեաթը հայտարարեց.

«—Մահմեդականներ, բարձրացնենք մեր ձայնը և թուրն աջ ձեռքում, հրացանը՝ ձախ ձեռքում, ռումբերը գրպաններում և աստծու անունը շուրթերիս, լույս հավատը սրտներումս հռչակենք հետևյալ պահանջները.

«... Օսմանական կայսրությունը— օսման մահմեդականների համար,

Եգիպտոսը—Եգիպտոսի մահմեդականների համար,

Պարսկաստանը—Պարսկաստանի մահմեդականների համար,

Թուրանը—Թուրանի մահմեդականների համար,

Բուխարան—Բուխարայի մահմեդականների համար,

Կովկասը—Կովկասի մահմեդականների համար»։

Ամեն ինչ հասցված էր հասկանալի պարզության, Օսմանական կայսրության մեջ հայեր չպետք է լինեն։

Ինչու՞, ի՞նչ էին արել հայերը։

Հայերն այն էին արել, որ պահպանում էին իրենց մայրենի լեզուն, մշակույթը, կենցաղը, ուզում էին ապրել հայավարի, պահպանել իրենց կրոնը և ամենասուրբ ընտանիքը։ Դիմադրում էին, երբ թուրք բեգերը հարձակվում էին նրանց վրա, նույնիսկ սպանում էին բեգերին ու նրանց գինվորներին։ Չէին թողնում, որ իրենց թալանեն, անասունները տանեն, երեխաներին գողանան, թուրքացնեն, տները վառեն, կանանց պղծեն։ Եվ, վերջապես, հայերը հրաժարվեցին կամավորական խմբեր կազմել, մտնել իրենց խմբերով օսմանական բանակի մեջ և նրանց հետ միասին կռվել Անդրկով-

կասի դեմ, կռվել ռուսների դեմ։ Ահա թե ինչ էին արել հայերը։

— Դուրս եկեք, տների դռները բաց թողեք,— ձայն էին տալիս լաղութչիկները,— ում դուռը փակ լինի՝ կջարդենք, տունը կայրենք։ Շներին կապեք, ում շունը բաց լինի կըսատկեցնենք։

Մի բան կար միայն, որ խոտորչուրցի կանայք պահպանեցին, այդ լազի կացիններն էին՝ իրենց պատիվը և մաքրությունը։ Եվ, որովհետև գյուղի մեծամասնությունը կանայք էին, երեխաներն ու հալևորները, դիմադրող չկար, անհանգստացնող չկար։ Ճիշտ նշանակված ժամին բնակիչները հավաքվեցին եկեղեցու բակում։

— Մենք լավ գիտենք, որ ձեր տղամարդիկ օտարության մեջ են,— խոսեց Էրզրումից եկած վալու ներկայացուցիչը,— մենք գիտենք, որ դուք աշխատասեր եք, պատվարժան հայեր։ Մենք ձեզ գնահատում և պահպանում ենք։ Բայց այնպես է փոխվել ժամանակները և այն դրության մեջ է Օսմանական մեծ կայսրությունը, որ մենք ստիպված ենք անհանգստացնել ձեզ։ Մենք ձեզ փոխադրում ենք երկրի բերրի շրջանները, որտեղ դուք հող կունենաք, ջուր կունենաք, կապրեք ավելի ապահով և հանգիստ կյանքով։ Վաղն այս նույն ժամին բոլորդ անխտիր կներկայանաք այստեղ, որտեղից և մեր փառապանծ ասկյարների հսկողության տակ ճանապարհ կընկնեք դեպի ձեր նոր հողն ու ջուրը։ Միայն նրանք կարող են մնալ իրենց տներում, ովքեր այսօր մինչև կեսգիշեր հայտարարեն, որ ընդունում են մուսուլմանական ճշմարիտ հավատը և իրենց արու զավակներին կտանեն թլպատման։ Իսկ հիմա ցրվեցեք և գյուղից չբացակայեք, հրամայված է ասկյարներին գյուղից դուրս ում որ նկատեն՝ կրակ բաց անեն վրան։ Գիշերը կարող եք նամակներ գրել ձեր հարազատներին, այդ նամակները կտաք մեզ, մենք կուղարկենք ձեր գրած հասցեներով։ Եթե չեք վստահում, չեք հավատում մեզ, ձեր միջից մի հարմար մարդ ջոկեք, նամակները տվեք նրան, թողեք նա ինքը տանի հանձնի ձեր հարազատներին։ Մենք կապահովենք, որ ձեր սուրհանդակը անվնաս տեղ հասնի և անվնաս վերադառնա նրանց պատասխան նամակները հետը։ Իսկ հիմա գնացեք ձեր տները և պատրաստվեք գաղթին։

Հավաքվածներից ոչ ոք ոչինչ չասաց, ոչ ոք ոչ մի հարց չտվեց։ Նրանք նայեցին իրար խիստ հայացքներով և լուռ ու մունջ հեռացան։ Այն տպավորությունն էր ստացվում, թե մարդիկ մի տեսակ օտարացել էին այդ պահին։

— Հարցեր չկա՞ն,— հանկարծ ձայն տվեց ասկյարներից մեկը։

Ծերունի մի մարդ կանգ առավ, նայեց Թուրք պաշտոնյային և ասաց.

— Ո՞ւր եք տանում մեզ։

— Ավելի լավ մի տեղ, որտեղ հողն ու ջուրն առատ են։

— Ո՞ր։ Այդ տեղն անուն չունի՞։

— Ունի, անուն ունի,— ասաց պաշտոնյան և գնաց։ Գնացին նաև մյուսները։ Եկեղեցու բակում մնացին մի քանի հոգի, մոտեցան իրար և միասին գնացին։ Նրանք էլ լուռ էին, գլխիկոր։

— Աշխարհում ամենավատ բանն այն է, երբ մարդ ըզգում է իր անզորությունը,— ասաց ծերունիներից մեկը։— Բայց ավելի քան վիրավորական է, երբ մարդ զորավոր է, բայց օգտվել այդ հզորությունից չի կարողանում, որովհետև նրա ձեռքերն ու ոտքերը կապել են իր իսկ հարազատները, որդիները, թոռները, մի խոսքով՝ իր գերդաստանը։ Այստեղ արդեն իսկապես որ անզոր կլինես։

— Ասածդ ի՞նչ է, հալևոր,— նկատեց նրա կողքից ընթացող հին ջրաղացպանը։

— Ասածս այն է,— պատասխանեց ծերունին,— որ ջրաղացը կա, ջրաղացի ջուրը կա, ջրաղացի քարերը կան, միայն չախ-չախը չկա և դու, հարյուր տարվա ջրաղացպան Սաքո, չես կարողանում ջրաղացդ բանեցնել, ջուրդ կապել, աղունդ աղալ, որովհետև թոռներիդ ոտքերն ու ձեռքերը կապած դրել են ջրաղացքարերի տակ, հենց որ ջուրը կապես, քո թոռներին կաղաս։ Հիմա ի՞նչ անենք, հալևորներ, մտածեք։ Մեզ անբան ոչխարների նման քշել տանելու են՝ ճամփեքին ենք մեռնելու, մեռցնելու են տեղ հասցնելուն պես։ Այսպես թե այնպես՝ մեռնելու ենք։ Ասեք՝ ի՞նչ անենք, հալևորներ։

Այս խոսքի վրա նրանցից մեկը մի կողմ քաշվեց ու նըստեց մի քարի վրա։ Մյուսները կանգ առան և մեկ-մեկ մոտեցան նրան ու նստոտեցին նրա կողքին։ Բոլորի ոտքերն էլ հոգ-

նել, թուլացել էին ծանր ու անլուծելի մտքերից, բոլորն էլ անզոր էին ու վշտահար։ Այդ պահին մի խումբ թռչուններ աղմուկով անցան նրանց գլխի վրայով և թռան դեպի արևմուտք։ Բոլոր ծերունիներն էլ նայեցին նրանց ետևից և մեկը միայն շըշընջաց.

— Սրանք էլ են գնում դեպի մայրամուտ,[1] ախ, սիրուն ճնճղուկներ, հայոց ճնճղուկներ։

— Միայն մենք թռչել չենք կարող,— ձայնակցեց նրան մի ուրիշը։

— Դե լսեք, հալևորներ,— խոսեց Սողոմոն անունով ծերուկը,— մեզ համար մեկ է՝ ապրենք թե մեռնենք։ Եթե ոչ այսօր, վաղն ենք մեռնելու, եթե ոչ կովի դաշտում, տանն ենք մեռնելու։ Մեկ է, մեռնելու ենք, և տերը մեզ համար ապրելու ժամանակ չի թողել։ Հիմա, եթե մեռնելը կա, ինչո՞ւ հենց էնպես, անիմաստ մեռնենք։ Անիմաստ մահը կորուստ է, եկեք այնպես մեռնենք, որ մեզ հիշեն, մեր անունները տան, մի քիչ էլ դրանով ապրենք, չկորչենք։ Ես մի լավ զինապահեստի տեղ գիտեմ, գնանք այնտեղ, զինվենք, կանանց ու երեխաներին ճամփու դնենք, և մեռցնելով մեռնենք։ Մոտ եկեք, վախենում եմ, որ մեզ լսող լինի։

Նրանք հավաքվեցին իրար գլխի և սկսեցին փսփսալ։ Փսփսոցը վեճի փոխվեց, քիչ մնաց կռվեին իրար հետ, բայց ձայները չբարձրացրեցին։ Երկար տևեց այդ «զրույցը»։ Եվ, վերջապես, ինչ-որ պայմանշան ստիպեց նրանց բաժանվել իրարից և իրենց տները գնալ։ Այդ գիշեր գյուղը քնեց մահվան քնով։ Ողջ գիշեր շրջող թուրք լազութչիկները ականջ էին դնում բաց պատուհանների տակ, բաց դռների մոտ և ոչինչ չէին լսում։ Սարսուռ անցավ նրանց մարմիններով, դատարկ գյուղը գերեզմանոցի էր նմանվում։ Բայց գյուղը դեռ չէր դատարկվել, մարդիկ դեռ իրենց տներումն էին, միայն թե լուռ էին։ Այդ գիշեր գյուղից հեռացել էին մի խումբ ծերունիներ Սողոմոն հալևորի առաջնորդությամբ, չնայած նրան, որ գյուղը շրջապատված էր ասկյարների կողմից և ոչ ոք գյուղից հեռանալ չէր կարող, բայց նրանք կարողացան։ Ստվերների նման սահեցին անանցանելի արահետներով և իջան ձորը, ձորում ինչ-որ տեղ կանչում էր միայնակ մի թռչուն։ Հալև-

[1] Մայրամուտ — մեռնելու իմաստով։

վորները մի պահ կանգ առան և նորից շարժվեցին դեպի Թրաշոմի կոնչոցը։ Խուլ, կարծես անլսելի աղմուկով, հոսում էր գետակը, գիշե՞րն էր ազդել նրա վրա, թե գիշերվա կեսին համրաքայլ ընթացող ծերունիներն էին վախեցրել նրան, թե՞ գիշերային Թռչոմի կոնչոցն էր սաստում նրան՝ ի՞նչ իմանաս, ինչն էր պատճառը, որ գիշերվա կեսին այդքան հանգիստ և լուռ էր հոսում այդ լեռնային, փրփրաբերան գետակը։ Գուցե նա էլ էր զգում, որ հալևորներն անցնում են իրենց վերջին ուղին, որ նրանք զոհասեղան էին գնում իրենց ընտանիքների, որդիների համար։

— Այստեղ զգույշ,— շշնջաց մեկը,— ոտքերիս տակ փոսեր կան։

Երբ փոսերն էլ անցան, հին ջրաղացի փլատակների մոտ մի աղոտ լույս երևաց։ Ծերունի Սողոմոնը թեթևացած շունչ քաշեց, նա գնում էր առջևից, ձեռքով նշան արեց՝ չտապել, և հալևորները չտապեցին. մեկ-մեկ, կորաքամակ, գլուխները կախ, նրանք վատ էին տեսնում և ծանր լսում։ Նրանցից ամենաերիտասարդը յոթանասուն տարեկան էր, ամենից ծերը՝ իր տարիքը չգիտեր, բոլորն էլ մրսում էին, սառն էին, բայց այդ սառած մարմինների ներսը կրակներ էին վառվում, վրեժի և ցասումի կրակներ։

Շուտով նրանք մոտեցան զենքի պահեստներին և ներս մտան մի խոնարհված դռնակից ու չքացան։ Միայն գիշերն իմացավ նրանց գալը և գիշերն էլ պահեց այդ սուրբ գաղտնիքն իր մութ ծալքերում։

Լույսը բացվեց, խոտորջուրցիները իրենց անասուններով, անհրաժեշտ իրերով, հացի կապոցներով, այն բոլորով, ինչ կարող էին հետները վերցնել հետիոտն մարդիկ՝ հավաքվեցին եկեղեցու գավիթում։ Ասկյարները սպասում էին նրանց և շատ զարմացան. Նրանցից ոչ ոք լաց չէր լինում, ոչ ոք ոչինչ չէր խնդրում, բոլորն էլ լուռ էին։ Նրանց դեմքերը չոր էին, մռայլ, ականջները խուլ, քայլվածքները զուսպ։ Միայն անասուններն էին, որ ոչինչ չէին հասկանում, բառաչում էին մեկ-մեկ իրար կանչելու համար։

Երբ գյուղը դատարկվեց, երբ բոլոր հայերը հավաքվեցին, Էրզրումից եկած սպան կանգնեց մի բարձր քարի վրա և ասաց.

— Հրամայում եմ կամովին հանձնել բոլոր տեսակի զենքերը։ Մեկ-մեկ մոտենալ ասկյար սպային խուզարկության համար։ Ում մոտ որ գտնվեց որևէ զենք, տեղն ու տեղը կրգնդակահարվի հենց այստեղ։ Առայժմ տասը րոպե ժամանակ եմ տալիս՝ զենքերը հանձնելու համար։

Զենքեր չկային, ոչ ոք չմոտեցավ ասկյար սպային։ Խուզարկեցին հավաքվածներին, խուզարկեցին նաև երեխաներին, նայեցին ամեն ինչ և չհավատացին։

— Զենքերը հանձնեք,— նորից զգուշացրեց սպան։

— Զենք չունենք,— ասաց մի ծերունի բոլորի անունից։

— Լավ,— պատասխանեց սպան,— հիմա ում մոտ որ զենք գտնենք, հենց այդ զենքով էլ սպանելու ենք բոլորին։

Ծերունին լուռ նայեց նրա աչքերին։

* * *

Տասը օր էր գիշեր ու ցերեկ քայլում էին խոտորջուրցիները լեռնային նեղ կածաններով, անանցանելի կիրճերով և մթին անտառներով։ Նրանց ուղեկցում էին ասկյարները, շտապեցնում, քշում էին։ Ետ ընկնողները, որոնք չէին կարողանում քայլել, այդպես էլ մնացին ճանապարհի եզրին ընկած։ Իհարկե, մեռնում էին։

— Ետ մի ընկնի, գյավուր,— զգուշացնում էին ասկյարները, և ետ ընկնողները քիչ չէին, օր օրի վրա ավելի էին շատանում։ Մանր քայլերով, գլուխները կախ գնում էին ծերունի խոտորջուրցիները երեխաները շալակներին, հոգնած, քաղցած, թուլացած։

— Այսպես էլ կվերջանա ամեն ինչ,— շշնջաց նրանցից մեկը,— եթե չսպանեն՝ այսպես կմեռնենք։ Որքա՞ն կարող ենք քայլել, հալևոր մարդիկ ենք, ուժներս պակասում, ոտներքներս հատնում է։

— Մենք, իհարկե, կարող ենք մեռնել,— լսվեց մի ուրիշ ձայն,— այդ բոլորովին էլ սարսափելի չէ։ Մենք մերն ապրել ենք արդեն։ Ափսոս երեխաները։

— Մտածելով բան չի դուրս գա, ասացեք, ի՞նչ կարող ենք անել։ Մենք միայն կարող ենք մեռնել, այս մի բանը չի

արգելվում, կարող ենք գետն անցնելիս երեխաներին ջուրը գցել։

— Սպասեցեք, հայևորներ, այդքան շուտ ինքներդ ձեզ մի թաղեք, դուք դեռ պետք եք։ Ճիշտ է, մենք շատով դուրս եկանք, հիմա քիչ ենք մնացել, բայց մնացել ենք։ Մենք նրման չենք այն մեծ արտերին, որ ծփում են դաշտերում, որտեղ գերանդին հնձում է սկզբից մինչև վերջ։ Մենք բուսնում ենք լեռների մեջ, փոքր հողակտորների վրա, ժայռերի տակ, մեզ գտնելը և հնձելը հեշտ չէ։ Եվ ինչ էլ որ անեն, մենք կմնանք ժայռերի արանքներում, անանցանելի արահետների եզրերին։ Մենք պետք է մնանք, քայլեք, հայևորներ, քայլեք։ Մեր տղաքները, եթե սաղ են, մի քարի տակից կելնեն, մի ձորից դուրս կգան, չեն թողնի, որ այդպես մեռնենք։ Քալեք, ջանըմ, քալեք։

Եվ քայլում էին, սողում էին, անուժ, անզենք, անհաց։ Ո՞ւր էին տանում նրանց։ Նրանց ոչ մի տեղ էլ չէին տանում, նրանց համար հասնելու տեղ չկար, ուր որ հասնեին այնտեղ էլ մահն էր։ Բոլորն էլ ծերունիներ, երեխաներ և կանայք էին։ Տանողները ոտքից գլուխ զինված էին։ Նրանց ասել էին.

— Մի մտահոգվեք, թող տեղ չհասնեն... Վարվեցեք դրանց հետ այնպես, ինչպես ասված է։ Հիշեք, չմոռանաք՝ հայ կոչվող տարրը պետք է ջնջվի աշխարհի երեսից։ Հայ անունը պետք է մոռացվի։ Թուրք հողի վրա ոչ մի հայ չպետք է մնա։

Եվ նրանց տանում էին։ Արդեն ժամանակն էր ուղղել դեռ տասնհինգերորդ դարում իրենց նախնիների թույլ տված սխալները։ Այդ օրերին էր, Թալեաթ փաշան աշխարհով մեկ հայտարարեց.

«—Հայկական հարցը վերացնելու գործում, այս երեք ամիսների ընթացքում ես ավելի շատ գործ արեցի, քան Աբդուլ Համիդը իր տիրապետության երեսուն տարիների ժամանակաշրջանում»։

Բնակչության այն մասը, որ չհասցրեց հեռանալ Խոտորջուրից, կամ մնաց իր հողին ու ջրին, հույսը դնելով «Հին դրացիական բարեկամության» վրա ամբողջովին կոտորվեց, և մի մարդ գոնե չմնաց, որ պատմեր մնացածներին, թե ինչ էր տեղի ունեցել Խոտորջուրում այդ օրերին։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ՎԱԼՏԵՐ ԳԵՎՈՐԳԻ ԱՐԱՄՅԱՆ

**Խոտորջուրցիներ**

Վիպակ և պատմվածքներ

АРАМЯН ВАЛЬТЕР ГЕВОРКОВИЧ

**Хоторджурцы**

Повесть и рассказы

(На армянском языке)
Издательство «Советакан грох»
Ереван, 1987


*Խմբագիր՝ Գ. Գ. Սիմոնյան*
*Նկարիչ՝ Վ. Մանդակունի*
*Գեղ. խմբագիր՝ Գ. Խ. Գյուլամիրյան*
*Տեխ. խմբագիր՝ Ս. Գ. Շահվերդյան*
*Վերստուգող սրբագրիչ՝ Ջ. Ս. Կարապետյան*

ИБ 5718

*Հանձնված է շարվածքի 1.06 87 թ.։ Ստորագրված է տպագրության 3. 11. 87 թ.։ Ֆորմատ՝ 84×108 1/32։ Թուղթ՝ տպագր. № 2։ Տառատեսակ՝ «Գրքի սովորական»։ Տպագրություն՝ բարձր, 14,28 պայմ. տպ. մամ.։ 12,45 հրատ. մամ.։ Տպաքանակ 20000։ Պատվեր 1258։ Գինը՝ 95 կոպ.։*

*«Սովետական գրող» հրատարակչություն, Երևան—9, Տերյան 91։*

Издательство «Советакан грох», Ереван-9, ул. Теряна, 91.

*ՀՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի № 1 տպարան, Երևան-10, Ալավերդյան 65։*

Типография № 1 Госкомитета Арм. ССР по делам издательств, полиграфии и книжной торговли, Ереван-10, ул. Алавердяна, 65.